ՀԻՊՊՈՂԻՏ ՏԷՆ

# ՎԵՆԵՏԻԿ

ԵՒ

# ՎԵՆԵՏԿԵԱՆ ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1896

ՀԻՊՊՈԼԻՏ ՏԷՆ

# ՎԵՆԵՏԻԿ

ԵՒ

## ՎԵՆԵՏԿԵԱՆ ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ





ՎԵՆԵՏԻԿ – Ս. ՂԱԶԱՐ

1896

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Իտալիոյ բովանդակ քաղաքաց մէջ Վենետիկ իւր նախկին հասարակապետութեան պատմական անթիւ վեհ յիշատակներով, իւր պէսպէս գեղարուեստական հրաշակերտներով, իւր չնաշխարհիկ տեսլեամբ և դիրքով, և իւր բարեխառն կլիմայիւ եղեր է միշտ՝ հոյակապ և ախորժելի քաղաք մի, ինչպէս իւր բնիկ ժողովրդոց նոյնպէս և իւր հեռաւոր այցելուաց, որոնք յետ մի անգամ տեսնելու զայն և իւր հրաշակերտից վրայ զմայլելու, դժուարաւ կարծես կը մեկնին նորա հիանալի ծովափունքէն: Ցիրաւի, յընթացս ժամանակաց բաւական գրութիւնք եղած են այս քաղաքիս վրայ առանձին գրքերով կամ օրագրաց մէջ, սակայն սոքա կամ չափազանց ընդարձակ գրութիւնք են և կամ լոկ հարեւանցի տեղեկութիւնք: Ներկայ մատենիկս՝ որ արդի դարուս բազմահմուտ գաղղիացի հեղինակի մը գրչին արդիւնք է, այն ինքն է Հիպպոլիտ Տէն, բոլորովին տարբեր ոճով և չափաւոր ընդարձակութեամբ գրուածք մ'է: Հեղինակս իւր այս գրութեան մէջ իբրեւ ի պատկերի կը ներկա-

յացնէ զՎենետիկ, նկարագրելով զայն իւր բանաստեղծական խանդով, պերճախօսական կորովով, հմտական տեղեկութեամբ, սրամիտ դիտողութեամբ, խորհին՝ այլ միանգամայն ծաղկեալ և ախորժելի ոճով։ Հեղինակիս այս երկասիրութիւնն անջատեալ գրութիւն մի չէ. նա ճանապարհորդելով Իտալիոյ նշանաւոր քաղաքները, զանոնք մի առ մի նկարագրեր է, և որոյ ամբողջութիւնն անուանած է Ուղեւորութիւն յԻտալիա. այլ մենք միայն Վենետիկ և իւր Նկարչութեան մասն ընտրեցինք թարգմանութեան համար, զոր և արդէն գրեթէ ամբողջապէս ներկայացուցած ենք Բազմավէպ ամսաթերթիս ընթերցողաց։

Ներկայ գրքուկիս թարգմանութեան նպատակն ուրիշ բան չէ, բայց եթէ իբր յուշարար մի ծառայեցնել զայն այն հիանալի քաղաքին՝ որ երբեմն հիւրընկալեր է նաև իւր մէջ մեր հայ վաճառականքը, որոնք զայն սիրած և իրենց փոքրիկ յիշատակներն եւս հոն թողած են։ Յուսամ ենք որ ախորժով պիտի կարդացուի գրքոյկս, որով և լաւ գաղափար մի պիտ'առնուի ինչպէս Վենետկոյ՝ նոյնպէս և զինքը նկարագրող գրչին վարժ ոճոյն վրայ։

Հ. ԵՓՐԵՄ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ

# ՎԵՆԵՏԻԿ



*Մուտք ի Վենետիկ. — Լճակք. — Շրջագայութիւն Վենետկոյ մէջ. — Մեծ ջրանցքն. — Սուրբ Մարկոսի հրապարակն. — Դքսական պալատն. — Գ. Վերոնացւոյն Վենետիկ դշխոյն. — Ծովու վրայ երեկոյեան և գիշերուան տեսարանք։*

20 *ապրիլ* 1864.



ԵՐԿԱԹՈՒՂԻՆ *կը մտնէ լճակաց մէջ, և իսկոյն տեսարանն անսովոր երեւոյթ և գոյն մը կ՚առնու։ Ա՛յլ եւս չեն տեսնուիր ո՛չ դալարիք և ոչ ծառք, ամենայն ինչ ծով է և աւազ. անծայր հորիզոնին վրայէն վեր կը բարձրանան ցած և տափարակ աւազակոյտք, որոց մի քանին կէս մը թրջած է ալիքն։ Թեթեւ հով մը կ՚երերէ փայլուն ջրաշեղջները, և մանրիկ*

ալիքներն ամեն վայրկեան կու գան կը մեռնին հարթ աւազին վրայ։ Արեւն ի մուտս խոնարհած պահուն կը ներկէ զասոնք ծիրանեգոյն, զորս ալեաց ուռիլն ալ՝ երբեմն կը մթագնէ երբեմն կը փայլփլեցնէ։ Այս անդադար շարժմամբ բոլոր գոյներն կը փոփոխուին և կը խառնուին։ Գորշ կամ աղիւսագոյն յատակք կը կապուտկին կամ կը կանաչանան զիրենք ծածկող ծովէն. երկնքի երեւոյթից համեմատ կը փոփոխուի նաև ջուրն, և այս ամենն կը խառնուի լուսոյ վտակաց մէջ, ոսկի հատիկներու ձեւով՝ որոնք թիթեղապատ կը ծածկեն մանրիկ ալիքները, արծաթի ոլորուածներու ձեւով՝ որոնք ծոպերով կը պատեն պտուտքող ջրոյն կատարները, առատ նշոյլներու և յանկարծական փայլմանց ձեւով, զորս կը ցոլացընէ ծածանման մը մակերեւոյթն։ Աչքի սահմանն և վարժութիւնք կը փոփոխուին և կը նորոգուին։ Տեսութեան զգայարանք ուրիշ աշխարհ մը կը գտնեն։ Հաստատուն երկիրներու թանձր՝ պայծառ և չոր գոյներու տեղ, վէտ վէտ ցոլացում մը, կակղութիւն մը և երանգներու անընդհատ պայծառութիւն մը կը ձեւացնեն ուրիշ երկրորդ երկինք մը, նոյնպէս լուսաւոր, բայց աւելի տարբեր, աւելի փոփոխական,

աւելի ճոխ և աւելի սաստիկ քան զմիւսն, պէսպէս գոյներէ ձեւացած, որոց խառնուրդըն ներդաշնակութիւն մը կը կազմէ ։ Ժամեր պէտք կ'ըլլայ անցնել՝ դիտելու համար լուսոյ այս աստիճանաբար նուազումները, այս գունոց խառնուրդները, այս պայծառութիւնը ։ Եւ մի՛ թէ ամեն օր դիտուած այս տեսարանն չէ՞, մի՛ թէ յակամայս երբեւ ուսուցիչ ընդունուած այս բնութիւնն չէ՞, մի՛ թէ իրաց այս ալեծուփ և հեշտալի արտաքին երեւոյթներով բանի ստզորուած երեւակայութիւնն չէ՞, ուսկից յառաջ եկած է վենետկեցւոց գոյներու խառնուածն ։

21 ապրիլ.

Օրական շրջագայութիւն մը գոնդոլայի մէջ. Նախ պէտք է պտըտիլ և ապա տեսնել ամբողջութիւնը ։

Սա Իտալիոյ մարգարիտն է, որուն նմանը բնաւ տեսած չեմ. քաղաք մը միայն գիտեմ, որ շատ հեռուէն և միայն ճարտարապետութեան մասով ասոր կը նմանի, որ է Բոսփորը ։ Բովանդակ Թերակղզւոյն մէջ աննման է ։ Երբ կը յիշէ մարդ Հռովմայ և Նէապոլսոյ աղտեղի փողոցները, երբ կը յիշէ Փլո-

րենտիոյ և Սիէնայի ցամաք և նեղ փողոցները, և յետոյ երբ կը դիտէ այս մարմարեայ պալատները, այս մարմարեայ կամուրջները, այս մարմարեայ եկեղեցիները, և գոթական, մաւրիտանական և բիւզանդական սեանց, պատշգամներու, պատուհաններու, քիւերու այս հրաշալի բանուածքը, և շարժուն ու փայլփլուն ջրոյ համատարած երեւոյթը, կը հարցնէ ինքն իրեն, թէ ինչո՞ւ համար իսկոյն այս տեղ եկած չէ, ինչո՞ւ համար երկու ամիս կորսնցուցեր է ուրիշ քաղաքաց մէջ; ինչո՞ւ համար բոլոր ժամանակը Վենետիկ անցուցած չէ։ Դիտաւորութիւն կը դնէ հոն բնակութիւնը հաստատելու, կ'երդնու որ հոն կրկին անգամ պիտի գայ. առաջին անգամ կը զարմանայ ոչ միայն հոգւով, այլ նաև սրտով, զգայարանքներով և բոլոր անձամբ։ Ա՛յլ եւս ինքզինքն երջանիկ կը կարծէ. կ'ըսէ ինքն իրեն, թէ կեանքն գեղեցիկ է և բարի։ Բաւական է իրեն միայն աչքերը բանալ, պէտք չկայ տեղէն իսկ շարժելու, գոնդոլան անզգալի շարժմամբ յառաջ կ'երթայ. մէ՛ջը ընկողմանած՝ կը թողու որ նաւակն տանի զինքը բոլոր, հոգին և մարմինը։ Խոնաւ և անուշիկ հով մը կը փայփայէ իր այտերը։ Ջրանցին ընդարձակ

մակերեւութին վրայ՝ կը ծածանին զովութեան և առաւօտեան լռութեան մէջ հանգչող պալատներու վարդագոյն կամ սպիտակաթոյր պատկերներն. մարդ ամեն ինչ կը կը մոռնայ, իր արուեստը, իր դիտաւորութիւնները, իր անձն անգամ. կը դիտէ, կ'ամփոփուի, կը վայելէ, իբր թէ կեանքէ ազատած՝ օդային՝ յանկարծոյն վերը իրաց վրայ սաւառնէր, լուսոյ և կապուտակի մէջ։

Մեծ ջրանցքն կ'երկընցնէ իւր կորագիծը երկու կարգ պալատներու մէջ, որոնք, իւրաքանչիւրն առանձինն և իրեն համար կառուցուած, պատահմամբ ժողվեր են իրենց զանազանութիւնները զայն գեղեցկացնելու համար։ Մեծաւ մասամբ միջին դարու են, առուստաձեւ կամարանկիւն պատուհաններով, ծաղկաձեւ և վարդակերպ զարդուք դրուագեալ պատշգամներով. գոթացի ճոխ երեւակայութիւնն կը փայլի իրենց մարմարեայ ժանեկին մէջ՝ առանց բնաւ տխուր կամ տձեւ ըլլալու. իսկ այլք Վերածնութեան դարու գործեր, եռակարգ վրայէ վրայ դետեղուած սիւներով կը բարձրանան։ Թանկագին և ողորկ դրուագուած կը տեսնուին պորփիւրն և օձաքարն դրանց վրայ։ Շատ ճակատներ վարդագոյն են և մեղմ երանգներով գունագու-

նուած, և իրենց արտաքական զարդերն կը նմանին ցանցակերպ գործուածներու, զորս կը գծագրէ ալիքն նուրբ աւազին վրայ ։ Ժամանակն գրած է բոլոր այս հին կերպարանաց վրայ իւր գորշագոյն և մաշած նշանագրուտը, և տատանեան լոյսն չքնաղ կերպով կը ծիծաղի լայնատփիւռ ջրոյն մէջ ։

Ջրանցն կը դառնայ, և ահա իբրև ծովային ուռճազարդ բուսականութիւն մը, իբրև շքեղ և նորաքանչ սպիտակաթոյր բուսատ մը, կը սկսի ջրոյ վրայէն վեր բարձրանալ փրկագործ սուրբ Աստուածածին[1] եկեղեցին իւր գմբէթներով, իւր դէզադէզ քանդակներով և իւր արձանազարդ ճակատով. քիչ մը հեռուն՝ ուրիշ կղզւոյ մը վրայ կը տեսնուի սուրբ Գէորգ[2] եկեղեցին, բոլորովին կլորաձև և ցըցուած, իբրև սատափի շքեղ խեցի մը ։ Աջէդ կը դարձնես դէպ ի ձախակողմն, և ահա սուրբ Մարկոս, զանգակատունն, հրապարակն, դըքսական պալատն ։ Հաւանական է, թէ աշխարհիս վրայ չկայ ատոր հաւասար գոհար մը ։

Աննկարագրելի է. հարկ է փորագիր պատկերները տեսնել, և սակայն ի՞նչ են փո-

1 · Santa Maria della Salute.
2 · San Giorgio Maggiore



Վենետիկ. – Մեծ ջրանց (էջ 6)։

րազէր պատկերք առանց գունոյ։ Հոս զանազան ոճերու խառնուրդ մը կայ. անհագին դէզ մը հրաշալեաց, անքաւ առատութիւն հնարագէտ ճարտարութեան, որուց վրայօք ընդհանուր աղօտ գաղափար մը լոկ կրնայ տրուիլ, որչափ որ զաւազան մը կրնայ գաղափար մի տալ ծաղկազուարճ ծառի մը։ Հոս աչքի զարնողն է ճոխ և բազմադիմի երեւակայութիւն և խառնուրդն, որ կը կազմէ միանգամայն զանազանութիւն և հակապատկերներ, յորոց յառաջ կու գայ ներդաշնակութիւն։ Երեւակայեցէք ութ կամ տասն գոհարեղէններ կախուած կնոջ մը պարանոցէն և թեւերէն, որոնք կը միաբանին իրենց շքեղութեամբ նորա գեղեցկութեան հետ։

Կամարներով և պալատներով շրջապատուած հրաշալի հրապարակն՝ քառակուսի ձեւով կը տարածէ իր սեանց անտառը, կորնթական խոյակները, արձանները, իր դասական ձեւով ընտիր և պէսպէս յօրինուածքը։ Հրապարակին ծայրը կը բարձրանայ կէս գոթացի և կէս բիւզանդացի տաճարն իր կոճղիզաձեւ գմբէթներով, սրածայր փոքրիկ զանգակատներով, արձանազարդ կամարակապերով, սիւնապաճոյճ գաւիթներով, միւսիոնազրուագ կամարներով, գունաւոր մարմարապատ յա-

տակներով, ոսկեփայլ գմբէթներով։ Նորասքանչ և խորհրդաւոր օրրարան, տեսակ մը քրիստոնէական մզկիթ, ուր կարմրորակ ըստուերին մէջ կ'երերան լուսեղէն ճառագայթք, ինչպէս ոգւոյ մը թեւերն իր ծիրանի և մետաքսեայ գետնափորին մէջ։ Այս ամենն կը վխտայ և փոշւոյ նման վեր կը բարձրանայ։ Քսան քայլ անդին, մերկ և ուղիղ՝ նաւու մը կայմին նման՝ հսկայ զանգակատունն հեռուէն կ'աւետէ ծովու ճանապարհորդաց և յերկինս կը բարձրացնէ վենետկոյ նախկին տէրութիւնը։ Իւր ստորոտը պատուած՝ իրեն կից Սանսովինոյի նրբարուեստ օթեակն[1] կը նմանի ծաղկի մը. բազմաթիւ արձաններ, խորաքանդակներ, անագապղինձներ, մարմարիոններ, գեղեցիկ և կենդանի արուեստի բովանդակ շռայլութիւն և ճարտարութիւն կը խառնեն զայն զարդարել։ Աստ և անդ քսան նշանաւոր բեկորք բաց օդի մէջ կը կազմեն թանգարան մը և յիշատակավայր մը. սուրբ Յովհ. Ակրեայէն[2] բերուած քառանկիւնի սիւներն, Կ. Պոլսէ յափշտակուած անագապղնձէ չորս ձիեր, անա-

1. Loggetta.
2. Saint-Jean d'Acre

գապղնձէ մոյթերն՝ որոց վրայ կը կախուին քաղաքին դրօշներն, կրանիղեայ երկու կոթողներ՝ որք իրենց գագաթին վրայ կը կրեն կոկորդիլոս մը և հասարակապետութեան թեւաւոր առիւծն, սոցա առջեւ մարմարեայ ընդարձակ քարափ մը և սանդուղք, ուր չուաններով կը կապուին գոնդոլներու խումբն։ Աչքերդ դէպ ի ծով կը դարձնես՝ և չես ուզեր այլ եւս ուրիշ բան տեսնել. Կանալետտեայ պատկերաց մէջ եւս կը տեսնուի այն, սակայն քողի միջէն. Նկարուած լոյսն՝ բնաւ իրական լոյս չէ։ Ճարտարապետութեանց շուրջը լճաձեւ ընդարձակուած ջուրն՝ օձապտոյտ կ՚երկընցընէ իւր մոզաիկան շրջանակը, կանաչի զարնող կամ կապուտակ գոյները, շարժուն և լըրթագոյն բիւրեղը։ Բիւր մանրիկ ալեակք կը խաղան և կը փայլին զեփիւռի ազդեցութեամբ, որոց գագաթներն կայծեր կ՚արձակեն։ Հորիզոնին վրայ, դէպ ի արեւելք Սկլաւոնեան քարափանց[1] ծայրը կը տեսնուին նաւերու կայմեր, եկեղեցեաց գագաթներ և մեծ պարտիզի մը կանաչութիւնք։ Այս ամենն ջրոց միջէն դուրս կ՚ելնէ, կը տեսնուի ամեն կողմ ալիքը որ կը մտնէ ջրանցից մէջ,

1. Riva dei Schiavoni

կ՚երերայ քարափանց երկայնութեամբ, կ՚անհետանայ հորիզոնին վրայ, տաւակի նման կը հոսի տուներու մէջ, և կը բոլորէ եկեղեցեաց շուրջը։ Փայլփլուն, լուսաւոր և շրջապարոյր ծով կը թափանցէ և կը պատէ զՎենետիկ իբրեւ փառք մը։

Զարդարանքի մը մէջ իբր միակ աղամանդ՝ դքսական պալատն կը նսեմացնէ մնացեալքը։ Այսօր ոչ ինչ կ՚ուզեմ նկարագրել, կ՚ուզեմ միայն զբօսնուլ։ Ասոր նման ճարտարապետութիւն երբէք տեսնուած չէ. հոն ամեն բան նոր է, պատշաճէն դուրս ելած կը կարծուի. կը հասկընամ, թէ մեր սովորական և զմեզ հիացնող դասական կամ գոթացի ձեւերէն դուրս կայ ամբողջ աշխարհ մը, և թէ մարդկային հնարագիտութիւնն անսահման է, և թէ կարող է բնութեան նման արհամարհել ամենայն կանոն և կատարեալ գործ մը արտադրել այնպիսի ոճով՝ որ բոլորովին ներհակ է այն ամենուն, որոց մէջ պէտք էր ամփոփուիլ։ Աչքի բոլոր վարժութիւնք կը շրջին, և հրապուրիչ զարմացմամբ կը տեսնուի հոն արեւելեան երեւակայութիւնն՝ որ լեցունը կը զետեղէ դատարկին վրայ, փոխանակ դատարկը լեցունին վրայ զետեղելու։ Ամուր բուներով սիւնաշար մը իւր

վրան կը կրէ ուրիշ երկրորդ մ'ալ բոլորովին թեթեւ, ժանեկաւոր գոթացի կամարներով և տառուստաձեւ զարդերով, և այսպիսի դիւրաբեկ նեցուկի մը վրայ կը տեսնուի կարմիր և սպիտակ մարմարեայ թանձր պատ մը, որոյ մարմարեայ շերտքն խաչաձեւ կը կտրեն զիրար իբր ուրուագծեր, և լոյս կը ցոլացնեն։ Իսկ վերը, դատարկ բուրգերու, սրածայր սիւնակներու, փոքրիկ զանգականներու, գրաստանգներու քիւ մը կ'անջատէ երկինքը իւր շրջանակէն, և այս մարմարեայ ու ծաղկազուարճ բուսականութիւնն՝ որ կը տեսնուի ճակատներու ծիրանեգոյն և սատափային երանգներու վրայ՝ կը յիշեցնէ մեզ Ափրիկոյ և Ասիոյ կողմերը բուսնող ճոխ հնդկաթզենիները, որոնք մէկ տեղ կը խառնեն իրենց սրածայր տերեւները և իրենց ծիրանեգոյն ծաղիկները։

Ներս կը մտնես, և իսկոյն աչացդ մէջ կը խռնուին ձեւեր։ Քանդակածոյ անագապղնձով դրուագուած երկու Ջրամբարներու շուրջը, չորս ճակատք կը ներկայացնեն իրենց ճարտարապետութիւնքը և արձանները, ուր կը փայլփլի նախկին Վերածնութեան բոլանդակ թարմութիւնն։ Չկայ ինչ մերկ և ցուրտ, ամեն բան քանդակներով և նկարներով լե֊

ցուած է. գիտնականին և քննադատին նրբախնդիր պահանջանքն ամենեւին չէ կարող՝ անաչառութեան և սրբագրութեան պատրուակաւ ամփոփել զգայուն հնարագիտութիւնը և աչքերը զբօսեցնելու պէտքը։ Ոչ ոք խստապահանջ է ի Վենետիկ, գրոց տուած կանոններու մէջ չի փակուիր, անկարելի է գալ յօրանջել կարմացմամբ մը Վիտրուվիոսի պատուիրած ճակատի մ՚առջեւ. հարկ է որ ճարտարապետական ձեռագործ մը բոլորովին գրաւէ և զուարճացնէ զգացող էակը. զարդերով, սիւնակներով և արձաններով կը հիւսուի այն, որով և ճոխ և զուարթ կ՚ըլլայ։ Հոն զետեղուած կը տեսնուին հեթանոս հսկայքն Արէս և Պիսիդոն, և աստուածաշընչի պատկերքն՝ Ադամ և Եւա. հնգետասաներորդ դարու քանդակագործք հոն կը դրուագեն իրենց քիչ մը դիւրաբեկ և իրական մարմինները, իսկ վեշտասաներորդի քանդակագործք հոն ի ցոյց կը դնեն իրենց յուզեալ և ջղոտ կերպարանքները։ Ռիծծոյ և Սանսովինոյ կը շինեն հոն իրենց սանդըղոց Թանկագին մարմարիոնները, իրենց արաբացի նկարուց նուրբ կճածեփերը և գեղեցիկ քմայարդար զարդերը, որ են՝ զրահներ և ճիւղեր, կորճք և պայք, երեւակայական

ծաղկունք, չարաճճի այծեր, շռայլութիւն մը բանաստեղծական բուսոց և զբօսեցուցիչ ու ոստոստող կենդանեաց։ Այս իշխանական սանդղոց վրայէն կ'ելնէ մարդ տեսակ մը երկչոտութեամբ և պատկառանօք, ամչնալով իր տխուր սեւ զգեստին վրայ՝ որ հակապատկերով մը կը յիշեցնէ այն մետաքսաճամուկ զառքաշները, փառաւոր վայրահակ դաղմատական պատմուճանքը, խոյրերը և բիւզանդական մոյկերը, աւատապետական փառաւորութիւնները, որոց համար շինուած էին այս մարմարեայ սանդղոց աստիճանք, որոց ծայրը կ'ընդունուի այցելուն Տինտորետտոյի սուրբ Մարկոսէն՝ որ օդոյ մէջ կանգնած է իբր ծեր Նեպտոնոս մը, և իրեն հետ մէկտեղ երկու վեհ կանայք, Զօրութիւն և Արդարութիւն, ընկերք դքսի մը՝ որ կ'ընդունի անոնցմէ հրամանատարութեան և պատերազմի սուրը։ Սանդղոյն ծայրը կը բացուին տէրութեան և հանդիսի բոլոր նկարազարդ սրահներն. ուր Տինտորետտոյ, Պ. Վերոնացին, Պորդենոնէ, կրտսերն Պալմա, Տիտիանոս, Բոնիփակիոս և ուրիշ քսան այլք՝ իրենց հրաշակերտներով ծածկեր են որմերը և կամարները, զորս գծագրեցին և զարդարեցին Պալլադիոս, Սկամոծծի և Սանսովինոյ։ Քաղաքին բովանդակ

հանճարն՝ իր ամենէն փայլուն ժամանակին մէջ՝ հոս եկեր խմբուեր է հայրենիքը փառաւորելու համար, կանգնելով իր յաղթանակաց յիշատակարանը և իր մեծութեան աստուածացումն։ Աշխարհիս մէջ չկայ բնաւ այսպիսի յաղթանակ մը. նաւական պատերազմունք, կարապներու վզերուն նման ծռած առաջներով նաւք, խռնուած թիերով ցռկանաւք, որմածակեր՝ ուսկից նետերու անձրեւք կը տեղան, կայմերու վրայ ծածանող դրօշք, պատերազմողաց խռովայոյզ խառնուրդք՝ որոնք իրարու կը զարնուին և գիրար կը կլանեն, լիւրիկեցի, սարակինոս և յոյն ամբոխք, արեւէն պղնձագոյն դարձած և կռուէն գալարուած մերկ մարմինք, ոսկւով սեթեւեթեալ կերպասք, ոսկեդրուագ երկաթեայ զրահք, մարգարտայեռ մետաքս. բոլորովին տարօրինակ խառնուրդ մը դիւցազնական և շռայլ հանդիսից, զոր այս պատմութիւնն տարբեր ներկայացուցեր է Զարայէն մինչեւ ի Դամիատ և ի Պատաւիոնէ ի Դարդանէլ. աստ և անդ այլաբանական դիցուհեաց բոլորովին մերկութիւնք. եռանկեանց մէջ Պորդենոնի Առաքինութիւնքն, որք են՝ այրական կերպ ունեցող յաղթահասակ կանայք հերակլեան մարմնով, արենայինք և զայրացկոտք. ամեն

ուրեք սփռուած կը տեսնուի այլական ոյժ, գործօն զօրութիւն, զգայական ուրախութիւն. և իբր նախամուտք այս ակնախտիղ թափօրին՝ արդի պատկերաց ամենէն ընդարձակն՝ Տինտորետտոյի Արքայութիւնն, ութսուն ոտք երկայն և քսանուչորս ոտք բարձր, յորում վեց հարիւր կերպարանք կը վխտան շիկորակ լուսոյ մէջ, որ հրդեհի մը վառող ծուխին կը նմանի։

Միտքն կը յափշտակուի և կը շլանայ. և մարդ զգայազիրկ կը մնայ։ Աչք կանգ կ՚առնուն և կը փակուին, յետոյ քառորդ ժամէ մը վերջ կ՚ընտրուի նիւթն. այսօր ես պատկեր մը միայն լաւ կերպով դիտեցի, այսինքն է Պ. Վերոնացւոյն Վենետկոյ յաղթանակն. սա ոչ միայն կը զուարճացնէ աչքերը՝ այլ և կը պարարէ։ Պատշգամներու և ոլորուն սեանց հրաշալի ճարտարապետութեան մը մէջ՝ գահի մը վրայ բազմած է Վենետիկ շիկագոյն, հիանալի գեղեցկութեամբ, և քաջառոյգ ու վարդագոյն մարմնով մը՝ որ խոնաւ կլիմաներու աղջկանց յատուկ է, և իւր մետաքսեայ շըրջազգեստն կը պարզուի մետաքսեայ Թիկնոցի մը ներքեւ։ Սորա շուրջը խումբ մը դեռահասակ կանայք հեշտալի և միանգամայն գոռոզ ժպիտով մը կեցեր են, վենետկեան նորօրինակ հրապուրով մը, գրեթէ գիցուհւոյ

մը՝ որուն երակաց մէջ կը խաղայ համարձակ կնոջ մը արիւնը. սակայն կը շրջի նա իր ամպոց վրայ և առ ինքն կը քաշէ զմարդիկ փոխանակ իջնելու մինչեւ առ նոսա…։ Ցժգոյն մանուշակեայ զգեստուց վրայ, իրենց կապուտակ և ոսկեայ վերարկուաց մօտ, անոնց կենդանի մարմինը, Թիկունքը և ուսերն լուսով կը Թաթաւին կամ կը լողան Թեբաստուերին մէջ, և իրենց մերկուԹեան մեղկ բոլորակուԹիւնք կը կրէ նոցա դիմաց և զրից հանդարտ ցուարթուԹիւնը։ Սոցա մէջ խրոխտապանծ այլ և անոյշ Վենետիկն կը նմանի դշխոյի մը՝ որ իւր բարձր աստիճանին մէջ երջանիկ ըլլալու իրաւունքը ունի, և միանգամայն կ՚ուզէ երջանկացնել զանոնք որ զինքը կը դիտեն. օդոյ մէջ երկու գլխիվայր հրեշտակք պսակ մը կը դնեն իւր պայծառափայլ գլխոյն վրայ։

Ո՜րքան ապիկար գործի մ՚է խօսքն։ Ողորկ մարմնոյ գոյն մը, լուսաւոր ստուեր մը մերկ ուսի մը վրայ, լուսեղէն Թրթռում մը շարժուն մետաքսի մը վրայ՝ կը ձգեն, կը բռնեն և կը պարձնեն աչքերը քառորդ ժամ մը, զորս պարզելու համար տարտամ բացատրուԹիւն մը միայն կրնամ գտնել։ Ի՞նչպէս կարելի է արտայայտել գեղին շրջազգեստի

մը վրայ կապտագոյն զգեստի մը ներդաշնա-
կութիւնը, կամ բազկի մը՝ որուն կէսն
ստուերի մէջ է և կէսն արեւուն ներքեւ։ Ու սա-
կայն գրեթէ նկարչութեան բովանդակ ճար-
տարութիւնն հոն կը տեսնուի՝ երկու իրարու
քով դրուած գունոց արգասեաց մէջ, ինչպէս
երաժշտութեան զօրութիւնն ալ կը տեսնուի
խազի մը ուրիշ խազի վրայ ունեցած ազ-
դեցութեան մէջ. աչքն կը վայելէ իրապէս
ինչպէս լսելիքն, բայց գրութիւնն՝ որ կը թափ-
անցէ մինչեւ ի խորս հոգւոյն՝ չազդեր ջղաց
վրայ։

Այս գաղափարական երկնքի ներքեւ, վան-
դակապատի մը ետեւ կը գտուին վենե-
տուհիք նոյն ժամանակի տարազով, քառա-
կուսի ձեւով կտրուած օձիքներով և պրկուած
շրջազգեստով։ Սա իրական աշխարհն է, որ
նոյնքան հրապուրիչ է։ Նոքա կը նային բեկ-
բեկ շարժումներով և ծիծաղկոտ, և իրենց
զգեստները և դէմքերը մաս մաս լուսաւորող
լոյսն այնպիսի սիրուն հակապատկերներով
կը ծաւալի կամ կը ցոլանայ, որ մարդ հա-
ճոյից յուզում մի կը զգայ։ Մերթ ճակատ
մ'է, մերթ նուրբ ականջ մը, մանեակ մը,
մարգարիտ մը, որք կ'ելնեն ջերմիկ ստուե-
րէն։ Մին իւր գեղածիծաղ երիտասարդու-

թեան մէջ աչքի զարնող սիրուն դէմք մ՚ունի։ Ուրիշ մը, լայն, քառասնամեայ, աչքերը կը վերցնէ ամենագեղեցիկ զուարթութեամբ։... Պառաւ կնոջ մը թեւը մնած խարտեաշ զանգրահեր օրիորդիկ մը վեր կը բարձրացնէ իր սիրուն ձեռքը կայտառ կերպարանօք, որուն առոյգ դէմքն վարդ մ՚է։ Իւր կեանքէն տժգոհ մէկն չկայ, չկայ մէկն որ չըլլայ՝ չըսեմ ուրախ՝ այլ և զուարթ։ Եւ ի՜նչպէս լաւ կը յարմարին այս թափանցիկ երեսի գունոց վրայ՝ այն ծալ ի ծալ և փայլփլուն մետաքսներն և այն սպիտակ և պայծառ մարգարիտք, ծաղկանց թերթերուն պէս գողտրիկ։

Հուսկ ուրեմն, բոլորովին ստորեւ կը ծփի այլրական և աղմկալից խառնիճաղանճն, պատերազմողք, ոստոստուն ձիեր, ճառագայթաւոր մեծամեծ պատմուճանք, զինուոր մը որ ասուեայ կնգուղ մը գլուխը դրած սրափող կը հնչեցնէ, զրահի մը քով մերկ մարդու թիկունք մը, և բոլոր անջրպետներուն մէջ խռնուած է կորովի և աշխոյժ գլուխներու բազմութիւն մը, անկեան մը մէջ մանկահասակ կին մը և իր զաւակն. այս ամենն դիզուած, գետեղուած և փոփոխուած ճարտար և ճոխ հանճարով մը, այս ամենն լու-

սաւորուած ինչպէս ծովն ամառ ատեն լուսաւորուած լուսասփիւռ արեւով ։ Ահաւասիկ այն ամենը՝ զոր պէտք էր հետը տանիլ՝ Վենետկոյ գաղափարը պահելու համար ։

Դէպ 'ի Հասարակաց պարտէզն ուղղուեցայ. այսպիսի տեսարանէ մը վերջ՝ կարելի է բնական իրեր միայն տեսնել ։ Սա հողատափ մ'է քաղաքին ծայրը, Լիդոյի դիմաց ։ Կանաչազեղ Թփիկներն ցանկեր կը յօրինեն. դեղին և կարմիր ծաղկունք կը բացուին արդէն ծաղկոցաց մէջ. ողորկ սօսիներ, խորտուբորտ կաղնիք՝ որոց բողբոջազարդ գլուխներն կը ցոլանան փայլփլուն ծովուն մէջ ։ Արեւելեան կողմն կայ դարատափ մը՝ ուսկից կը տեսնուին հորիզոնն և հեռաւոր կղզիք ։ Այն տեղ նորա ոտից ներքեւ կը տեսնուի ծովն, որ կը Թաւալի իւր երկայնաձեւ նուրբ ալիքներով կարմրորակ աւազի մը վրայ. փափուկ մետաքսեայ և երփնազարդ գոյներ, երակաւոր վարդեր, Պ. Վերոնացւոյ շրջազգեստից նման տժգոյն մանիշակներ, Տիտիանոսի զառքաշից նման Թանձր, գինեգոյն ծիրանեփայլ ոսկեայ դեղին երանգներ, սեւորակ կապոյտի մէջ Թաթաւուած նսեմագոյն կանաչներ, և արծաթեայ խայտախարիւ կամ կայծերով զարդարուած լրթագոյնք կը ծածանին, կը միա-

նան և կը խառնուին կրակի անթիւ սլաք-
ներու ձեւով, որոնք բարձրէն կու գան կ'ընկ-
նին անոնց վրայ իւրաքանչիւր ծաւալման
արեւու ճառագայթից ։ Գողտր կապուտագեղ
ընդարձակ երկինք մը կը պարզէ իւր գմբէթը,
որոյ ծայրը կը հանգչի Լիդոյի վրայ, և ե-
րեք չորս անշարժ ամպեր սատափէ ժայռերու
կը նմանին ։

Դեռ աւելի հեռու գնացի, և օրս ծովու
վրայ անցուցի ։ Վերջապէս հովս ելաւ և գի-
շերն վրայ հասաւ ։ Տմոյն կոյներն, դեղնորակ
գորշն և մանիշակագոյն կանաչն իջան ջրոյն
վրայ, որ կը ծփծփայր անընդհատ և աղօ-
տափայլ, և իւր մթնցած ծփանքն անհան-
դարտութեան խոր զգացում մը կ'ազդէր ։
Հովս սաստիկ յուզման մէջ է, կ'ողբայ և
յերկինս մեծամեծ ամպեր կ'ոլորէ. արեւ-
մուտքը կարմրցնող հրդեհի մնացորդն ալ ան-
երեւութացած է ։ Մերթ ընդ մերթ լուսինն
ամպոց պատառուածներու միջէն կ'երեւի և
կը ծածկուի, նա յառաջ կ'երթայ ծանծաղ
տեղէ մը անցնելով ճեղքուածքէ ճեղքուած,
գրեթէ այն ինչ լուսաւորուած՝ կը մարի,
վայրիկ մը միայն սփռելով իւր լոյսը տատա-
նեալ կոհակաց վրայ ։ Սակայն կը բացուի
երկնային գմբեթին բոլորակութիւնը և մե-

ծութիւնը. Երկիրն հորիզոնի վրայ կ'երեւի իբր բարակ ածխային գօտի մը. ծովն երերուն, մշուշն անորոշ, և վերը կը գրաւեն շարժուն ամպերու անթափանց մարմիններն։

Այսպիսի գիշերուան մը մէջ ջրոյ գոյնն անբացատրելի է. թխաթոյր և մութ յասպիսի գունով, մերթ գունատ, բայց անթիւ փրս-փսոցներով շառաչուն, կը լսուի իր ձայնը՝ առանց գրեթէ տեսնելու զայն, երերող պատկերներու այն ընդարձակ անապատին մէջ առանց իր մը որոշելու։ Տակաւ տակաւ աչք կը վարժին և կը զգան անեղծ լոյսը որ միշտ կը ցոլայ ծովէն։ Իբրեւ հայելի մը ծածուկ և փակուած սենեկի մը մէջ, իբրեւ անծանօթ խորերուն մէջ գտուած մոգական հայելիներէն մին՝ զոր կը նկարագրեն առասպելայօղ գըրոյցք, նա կը փայլի աղօտ, խորհրդաւոր կերպով, սակայն միշտ կը փայլի. մերթ փոքրիկ կոհակի մը ծայրն է որ դուրս կ'ելնէ, մերթ լայն ծփանքի մը կռնակն է, մերթ հանդարտ յատակի մը ջինջ մակերեւոյթն է, մերթ դարձեալ պտոյտի մը շարժումն՝ որ յառաջ կը բերէ պայծառութիւն մը, հեռաւոր ցոլացում մը, սպիտակ յանկարծական ջրոյ ցայտում մը։ Բոլոր այս աղօտ լոյսերն զիրար խաչաձեւ կը կտրեն, կը ծածկուին, կը

խառնուրին, և ահա մթութեան մէջէն դուրս կ'ելնէ անորոշ պայծառութիւն մը իբր ստուերի մէջ տեսնուած մետաղէ մը, աժգոյն լուսոյ առատութիւն մը, անջնջանելի փայլունութիւն մը կենդանի ջրոյ, զոր զուր տեղ կը նսեմացնէ մեռեալ երկինքն ։

Երկու կամ երեք անգամ լուսինն երեւցաւ, որոյ երկայն դողդոջուն գիծն կը նմանէր յուղարկաւորութեան մը լապտերի գծին՝ որ կը վառուի վար կախուած լաթերու մէջ և շքեղ մեռելաքեմի մը սեւ ծածկոցին առջեւ ։ Հորիզոնին վրայ, իբրեւ ջահերու թափոր և անսահման միջոցի մը մէջ կեցած շիրիմներ, կ'երեւէր Վենետիկ իւր լոյսերով և շէնքերով․ աստ և անդ ամփոփուած կը տեսնուէր լոյսերու խումբ մը, ինչպէս մոմերու խուրձ մը դագաղի մը անկեան մէջ ։

Նաւակն կը մօտենայ․ ձախակողմն՝ անսովոր լռութեան մը մէջ կ'ընկղմի Որփանոյ ջրանցն անշարժ և ամայի․ սեւ և փայլփլուն ջրոյ այս հանդարտութիւնն կը թափանցէ հաճոյից և սարսափի ջղերուն մէջ ։ Միտքն յակամայս կ'ընկղմի այս ցուրտ խորութեանց մէջ ։ Ո՜րքան անսովոր է այս մունջ և գիշերային ջրոյն կեանքն ։ — Սակայն նոյն պահուն եկեղեցիք և պալատք

կ՚ ընդարձակին և կը լուղան ծովու վրայ ուրուականի կերպարանօք։ Սուրբ Մարկոս կ՚երևի, և իւր ճարտարապետութիւնքն իրենց սրածայր զանգակատներով և բազմապատիկ գմբէթներով կը գծեն մթութիւնը։ Կախարդի մը ցնորից նման, երբ օդային զարդանկար երևակայական պալատի մը՝ երկու կարգ լոյսերու մէջ կը տեսնուի հրապարակն իւր սիւներով և իւր զանգակատնով։ — Յետոյ նաւակն յառաջ կ՚երթայ կասկածելի ջրափողոցներու միջէն, ուր իրարմէ հեռու մեծ լապտեր մը կը ստուերագրէ ջրոյն վրայ իւր ծփծփուն ցցունքը. ո՛չ մի դէմք և ո՛չ մի շառաչ, բաց 'ի նաւավարի ձայնէն՝ անկեանց դարձուածներու մէջ. ամեն վայրկեան գոնդոլայն կամրջի մը մթութեան մէջ կը մտնէ, յետոյ դանդաղօրէն երկնցող որդի մը նման կը սողայ պալատի մը քարերու շարքին երկայնութեամբ, նկուղի մը մթութեան չափ թանձր ստուերի մը մէջ կորսուելով։ Իսկոյն դուրս կ՚ելնէ, և առանձին լապտեր մը կ՚երևի՝ որ տխուր կերպով կ՚երերայ գիշերուան մէջ և կոհակի մը կապուտակ փորին վրայ կը ծաւալէ ցոլացումներ և վայրկենական փայլունութիւն մը։ Մերթ ընդ մերթ ալիքն կը զարնուի քակուած սանդու-

խի մը մաշած հիմերու. կ'երեւի վանդակափակ պատուհան մը, բոլորուած պատ մը. չորս բոլորը խառնակութիւն մը զիրար խաչաձեւ կտրող ջրանցներու, օձապտոյտ ջրոց՝ որոնք կ'երթան կ'ընկղմին անծանօթ կերպարանաց մէջ։

### Հրապարակք և փողոցք. — Կերպարանք. — Արձարանք։

ԱՄԵՆ ինչ գեղեցիկ է. կ'ենթադրեմ որ բնաւորութեան համակրութիւններ կան, յորոց մին կը գտնեմ ես այս տեղ. տուէք ինձ գետի մը եզերքը մեծ անտառ մը և կամ Վենետիկը։

Ամենայն ինչ հաճոյք կ'ազդեն, մինչեւ փողոցներն անգամ և փոքրիկ հրապարակներն։ Իմ բնակած Լորեդանի պալատէն դէպ ի սուրբ Մարկոս երթալու համար՝ պէտք է անցնիլ անկանոն և սիրուն փողոցներէն, որոնք զարդարուած են կրպակներով, փերեզակի ապրանքներով, ի ցոյց դրուած սեխերով, կանաչեղէններով և նարինջներով, բազմախուռն դիտողաց տարազներով, խորամանկ կամ զգայասէր կերպարանքներով, շառաչուն

և յեղյեղուկ ամբոխէ մը։ Այս փողոցներն այնքան նեղ են, և իրենց անկանոն պատե-րուն մէջ այնպէս տարօրինակ կերպով նեղ ընկած են, որ մարդ իւր գլխոյն վրայ միայն կը տեսնէ երկնքի ժանեկաձեւ նեղ ու եր-կայն նարօտ մը։ Կը հասնիս հրապարակիկ մը, ամայի բացավայր [1] մը, բոլորովին ճերմըկ-ցած լուսեղէն սպիտակ երկնքի մը ներքեւ։ Սալաքարինք, որմք, շրջափակք, յատակք, բոլորն ալ քարէ են. չորս կողմը կը տեսնուին գոց տներ, որոց շարքերն կը ձեւացնեն եռան-կիւն մը կամ քանդակազարդ քառանկիւն մը՝ երկննալու պէտքէն և որմերու դիրքէն. կե-դրոնը կը տեսնուի նրբարուեստ ջրամբար մը, որոյ եզերքի քարին վրայ կը խաղան քանդակածոյ առիւծներ և մերկ արձանիկ-ներ։ Անկեան մը մէջ կը տեսնուի տար-օրինակ եկեղեցի մը, սուրբ Մոյսէս, — յի-սուսեան ճարտարապետութեամբ ճակատ [2] մը, սուրբ Առաքեալք կամ սուրբ Ղուկաս, — ար-ձանազարդ մայրաճակատ մը, բոլորովին սեւ-ցած աղային օդոյ խոնաւութենէն և արեւու եր-կարժամանակեայ կիզողութենէն. — կողմնակի

1. Campo.
2. Façade jésuitique.

նման ակատէ կամ պորփիւրէ բաժակներու և բազմատեղն ճրագարանաց. այս անկիւնասայրք և կատարք, նորօրինակ յստակութեամբ մը կը կտրեն երկնային մեծ կոնքը, և երկնքին բոլորովին վառը հանգչած կը տեսնուի հեռաւոր զմրուխտի գոյն մը։

Հոգաբարձուաց[1] կամարակապերու ներքեւ կը սկսին վառուիլ լոյսերու փունջեր. կը նստիս ի սրճարանի Փլորեան՝ փոքրիկ սենեկաց մէջ, որոնք զրուագուած են մեծ հայելիներով և այլաբանական ծիծաղկոտ կերպարանքներով. կիսափակ աչքերդ ներքուստ կը հետեւին օրուան պատկերներուն, որոնք իբրեւ երազ մը կը կարգաւորուին և կը փոփոխուին. բերնիդ մէջ կը թողուս որ հալին անուշահոտ օշարակներն, յետոյ զանոնք կը սառեցնես համեղ սրճով մը, որուն նման Եւրոպիոյ մէջ ուրիշ տեղ չի գտուիր. արեւելեան ծխախոտ կը քաշես, և կը տեսնես առջեւդ մետաքսեայ շրջազգեստով՝ շնորհաշուք, պճնազարդ ծաղկավաճառ կանայք՝ որոնք լուռ ու մունջ կը դնեն սեղանիդ վրայ նարգէս կամ մանիշակներ։ Այն միջոցին հրապարակն լեցուած է բազմութեամբ. սեաւ նմբոխ մը կը բզզէ և կը

1. Les Procuraties.

շարժի լոյսելով գծուած ստուերին մէջ. շրջուն երաժիշտք կ'երգեն կամ նուագահանդէս մը կը կազմեն ջութակներով և տաւիղներով։

— Վեր կ'ելնես, և ահա շարժուն ստուերներով լեցուած հրապարակին ետեւը, լուսաւոր և զուարթ կրպակներու կրկին ծոպի մը ծայրը, կը տեսնուի սուրբ Մարկոս. իւր արեւելեան անսովոր բուսականութիւնն, իւր կոճղէզներն, իւր փուշերն, իւր արձաններու ցանցակերպ գործուածն, իւր գաւիթներու սեաւ խոռոչներն, որոնք կը կորսուին երկու կամ երեք լապտերներու դողդոջմանց ներքեւ։



*Հին Վենետիկն, — Երկարաձգութիւն քաղաքապետական վարչութեան. — Եզականութիւն և առատութիւն հնարագիտութեան փոքրիկ ազատ պետութեանց մէջ. — Վերածնութիւն ճարտարապետութեան. — Սուրբ Մարկոս. — Մուտք և կերպարանափոխութիւն բիւզանդական ոճոյն. — Միւսիոնք և քանդակք։*

25 ապրիլ.

ՎԵՆԵՏԿՈՅ եզական, տարօրինակ և միակ քաղաք ըլլալուն պատճառն է, որ յետ անկման հռոմէական պետութեան՝ ինքն միայն մնաց ազատ քաղաք մը Եւրոպիոյ մէջ, և անընդհատ շարունակեց հին հասարակապետութեանց վարչութիւնը, սովորութիւնը և ոգին։ Երեւակայեցէք Կիւրենէ, Ռւտիկէ, Կորկիւրա, յունական կամ պունիկեան գաղթականութիւն մը, որք հրաշիւք ազատելով արշաւանքէ և ընդհանուր նորոգմանէ, կ'երկարաձգեն մարդկութեան հին տիպար մը՝ մինչեւ ի գաղղիական յեղափոխութիւն։ Վենետկոյ պատմութիւնն այնքան զարմանալի է՝ որքան Վենետիկ ինքնին։

Յիրաւի, սա գաղթականութիւն մ'է, գաղթականութիւն մը Պատաւիոնի, որ խոյս տալով Ալարիկեայ և Ատտիղասայ ձեռքէն՝ կ'ապաստանի անմատչելի տեղ մը, ինչպէս երբեմն Փոկէա անցաւ ի Մարսիլիա՝ ազատելու համար նմանօրինակ աւերիչներու ձեռքէն, որպիսիք էին Կիւրոս կամ Դարեհ։ Յոյն գաղթականութեանց նման, սա ի սկզբան կը պահէ զինքը մայրաքաղաքին հետ միացնող կապը։ Յամին 421, Պատաւիոն կը հրամայէ քաղաք մը կառուցանել ի Ռիալտոյ, հիւպատոսներ կը ղրկէ, կը շինէ եկեղեցի մը։ Դուստրն կը մեծնայ իւր մօր հովանաւորութեան ներքեւ, յետոյ իրմէ կը բաժնուի։ Նոյն վայրկենէն, երեքտասան դարուց միջոց ո՛չ մի բարբարոս, ո՛չ մի գերման կամ սարակինոս թագաւոր պիտի ընկճէ զնա։ Նա բնաւ չհաշուեցաւ աւատական կուսակցութեան մէջ․ Կարոլոս մեծի որդին յաղթուեցաւ անոր լճակաց առջեւ․ փռանկ կամ գերմանացի կայսերք իմացան, թէ նա բնաւ իրենցմէ կախումն չունի, այլ ի Կոստանդնուպոլսոյ։ Եւ այս հպատակութիւնն՝ որ պարզ անուն մ'է, շուտով կ'աներեւութանայ։ Ի մէջ ոսկեփայլ կայսերաց Բիւզանդիոնի և գրահաւոր կայսերացն Էքս-լա-Շապելի, և ընդդէմ օ-

տարացեալ Ցունաց ահագին նաւերու ու գերմանական ծանրաբեռն այրուձիոյն, զինքը ազատ և միանգամայն լատին կը պահեն իւր ճահիճքն, իւր ճարտարութիւնն, իւր քաջութիւնն։ Իւր հին պատմիչք կը սկսին իրենց տարեգրքերը՝ պարծենալով մը իրենց հռովմայեցի ըլլալուն վրայ, մանաւանդ թէ առաւել իսկ քան զհռովմայեցիս Հռովմայ, այնքան անգամ նուաճուած և ապականուած օտար արեամբ։ Ցիրաւի, վաղուց իսկ մեկուսացաւ կայսերական ապականութենէն, հին քաղաքաց պատերազմող և ժիր ոճով վերըստին կենդանանալու համար պատսպարուած անկեան մը մէջ, ուր չէր կարող հասնիլ աւատական տմարդիներու յարձակումն։ Նորա մէջ՝ մարդ բնաւ չի թոյլցաւ բիւզանդական մետաքսեայ զառքաշով, և ո՛չ ալ բթացաւ դերմանական զրահաւոր զգեստուց մէջ։ Փոխանակ գրագիր մ՚ ըլլալու արքունեաց ներքինւոյ մը ձեռաց ներքեւ, և կամ զինուոր մը դղեկի մը պարոնին հրամանաց տակ, նա կ՚ աշխատի, կը նաւէ, կը շինէ, կը խորհրդակցի և կը քուէարկէ, ինչպէս երբեմն Աթենացի մը կամ Կորնթացի մը, առանց ուրիշ առաջնորդի ինքն իրեն, քաղաքակցաց և հաւասարակցաց մէջ։ Ի սկզբանէ, երկուք

ու կէս դարուց միջացին մէջ, իւրաքանչիւր կղզեակ տրիբուն մը կ՚անուանէ, տեսակ մը ամեն տարի նորոգելի քաղաքապետ, պատասխանատու բոլոր կղզեաց ընդհանուր ժողովոյն առջեւ։ Կը պատմեն վաղեմի ժամանակագիրք, թէ ամեն տեղ կերակուրք և բնակութիւնք միմեանց նման են։ Վեցերորդ դարու մէջ Կասսիոդոր կ՚ըսէ, թէ նոցա մէջ « աղքատն հաւասար է հարստին, իրենց տներն միաձեւ են, նոցա մէջ չկայ բնաւ տարբերութիւն և ո՛չ նախանձախնդրութիւն »։ Յունական սակաւապէտ և գործունեայ ռամկապետութեանց պատկեր մը կը տեսնուի։ Յամին 697, երբ դուքս մը կ՚ընտրեն, իրենց ազատութիւնն աւելի եւս փոթորկալից կ՚ըլլայ։ Կը սկսին կռիւք ընտանեաց մէջ և հարուածք ձեռաց ի ժողովս։ Եթէ դուքսն բռնաւոր ըլլայ և ուզէ իւր իշխանութիւնը մշտնջենաւորել իւր ընտանեաց մէջ, զինքը կը հալածեն, կը փակեն մենաստանի մը մէջ, աչքերը կը փորեն, նաեւ ստէպ կը սպաննեն զդուքսը, ըստ սովորութեան հին քաղաքաց։ Յամին 1172, յիսուն դքսերէն տասնեւինն սպանուած, աքսորուած, կրճատուած կամ պաշտօնանկ եղած էին։ Քաղաքն ունի իւր տեղական աստուածը, իբր կապիտոլեանն Արամազդ կամ

աթենականն Պոլիադ[1]. ի սկզբան սուրբ Թէոդորոս իւր կոկորդիլոսով, յետոյ սուրբ Մարկոս իւր թեւաւոր առիւծով. և Աղեքսանդրիայէն խաբէութեամբ բերուած առաքելոյս մարմինն կը պահպանէ և կը սրբակերտէ հայրենի հողը, ինչպէս երբեմն կողոնի մէջ թաղուած Իդիպոսն կը սրբակերտէր և կը պաշտպանէր աթենացւոց երկիրը։ Հասարակաց ոգին այնպէս զօրաւոր է՝ ինչպէս Միլդիասեայ և Կիմոնի ժամանակները։ Որսէոլոյ Ա. հիմնեց իւր ծախիւք անկելանոց մը, վերստին շինեց պալատը և սուրբ Մարկոսի եկեղեցին իւր յատուկ դրամով։ Իւր որդին Որսէոլոյ Բ. իւր ընչից երկու երրորդ մասը ձգեց պետութեան, մնացածն ալ իւր ընտանեաց։ Ահաւասիկ արդ հին ձիթենւոյն կանաչ և նորաբոյս երկրորդ ճիւղ մ՚ալ աւատական ձմերուան մէջ։ Իւր պետութեան ձեւով, կրօնից սահմաններով, սովորութեամբք և զգացմամբք, վտանգօք և ձեռնարկութեամբք, զինքը մղող խայթոցներով և իրեն առաջնորդող գաղափարներով, մարդ երկրորդ անգամ մ՚ալ կը նետուի այն ասպարիզին մէջ՝ զոր

1. Յն. Πολιάδος. որ է քաղաքապահ, Աթենասայ ընծայուած անուններէն մին է։

միւս մարդկային ընկերութիւնք բոլորովին ձեռքէ թողեր էին։

Այլ եւս չենք ըմբռներ այն զօրութիւնը, որով կը վազէին նոքա այս շրջափակ ասպարիզին մէջ։ Այլ եւս չենք տեսներ այն ազդեցութիւնքը, զոր կը ցուցնէին այս սահմանաւորեալ ընկերութիւնք։ Կորսուեցանք ահագին պետութեան մը մէջ։ Անկարելի է երեւակայել ի մի քաղաք վերածուած ընկերութեան անդադար գրգռութիւնքն ի քաղաքերութիւն և ի նախաձեռնութիւն։ Մենք այլ եւս չենք կրնար կասկածիլ այն հնարագիտութեան աղբիւրներուն, հայրենասիրութեան եռանդեան, հանճարոյ ցանձուց, անձնանուիրութեան հրաշալեաց, իշխանութեանց և մարդկային վեհանձնութեանց աքանչելի զարգացման վրայ, որուն կը հասնի անհատն՝ երբ կը շարժի իւր կարողութեանց յարմար և իւր գործոյն յատկացուած շրջանակի մը մէջ։ Ո՛րքան հազուագիւտ է այժմ քաղաքացւոյ մը մէջ այս զգացումն, թէ ինքն կը պատկանի հայրենեաց։ Հարկ է որ նա վտանգի մէջ ըլլայ, և այս մի անգամ կը պատահի դարու մը մէջ[1]։ Սովորաբար մենք զայն չենք

1. Յամին 1594, ի ժամանակս Հենրիկոս Դի. 1712, ի ժամանակս Լուդովիկոս ԺԴի. 1792, ի ժամանակս համախմբութեան (Convention)։

տեսներ, նա մեզի համար վերացեալ բան մ'է. մենք միայն մեր ըղձերին պատճառաբանութեամբ կ'ուզենք իրեն օգտակար ըլլալ: Իբր խառնաշփոթ կազմած մը կ'երեւի նա մեզ, կը նեղէ զմեզ և կը ծառայէ մեզ, բայց վերջապէս կը յարատեւէ և պիտի չխանգարուի: Անուի մը խորտակումն, պատառուածք մը, որքան ծանր ալ ըլլայ, քիչ մը պիտի նուազեցնէ եկամուտը, ահա բովանդակն: Մեր և մեր մերձաւորաց կեանքն վտանգի մէջ պիտի չցրուին. փողոցի մէջ միշտ պիտի գտնենք զմեզ պաշտպանող քաղաքապահ զինուորներ. մեր գործերն քիչ վնաս պիտի կրեն, և մեր զուարճութիւնք պիտի չդադարին: Երբ առանձնական կեանքն հասարակաց կեանքէն բաժնուեցաւ, պետութիւնն կառավարութեան ձեռքն անցնելով՝ այլ եւս անհատին գործն յերեւան չելաւ: Ընդ հակառակն, այս ժամանակիս մէջ, նա որ կը հարուածէ հասարակութիւնը՝ այնպիսին սաստիկ կը վիրաւորէ նաև առանձնականը. ազգային գործերն իւր յատուկ գործերն են: Երբ Հունգարացիք կը հասնին Վիեննայի դիմացը, հարկ չկայ զինքը խրախուսելու որպէս զի դէպ ի Մալամոկկոյի անցքը դիմէ. նա իւր տունը կեցած կը գործէ իւր որդիներով և իւր կնաւ, ինքն կը կառավարէ

իւր նաւակը. ինչպէս որ մենք կը գործածենք այժմ ջրհանները, երբ մեր տնէն երկու քայլ այնդին՝ կրակ կայ կը պտտան: Դաղ-մատիոյ հէնները դէմ պատերազմական հարիւր վաթսուն տարիներն պետական բանակցութեան գործ մը չեն, և ո՛չ խորհըրդարանի հաշիւ մը, և կամ ատղնեգործ պատմուճանակիր տասնուերկու քաղաքագէտ գլուխներու պատրաստուած դրութիւն մը, ինչպէս մեր Ափրիկոյ արշաւանքն: Նաւերն խափանուած, նշանուածներն եկեղեցիէն դուրս հանուած, գերի քաղաքացիք թիավարութեան ենթարկուած, ամեն կողմանէ առանձնական վէրքերն արիւն կը վազեցնեն ու կը վազեցընեն՝ առանձնականները ի քաղաքացի փոխելու համար: Երբ քիչ վերջը քաղաքն իւր զաղթականներով շրջապատէ Միջերկրականը, այդ դիրքն հաստատուն պիտի պահէ մի և նոյն հայրենասիրութիւնը: Լեմնոսի Նաւագիերի դքսերն, Նաքսոսի և Պարոսի Սանուդոյ իշխանքն, և ձիաւորաց ու հետեւակաց հինգհարիւր երեսուն և եօթն ընտանիք՝ որոնք իբրեւ աւատ ընդունեցան Կրետէի երրորդ մասը, սոքա քաջ գիտեն, թէ իրենց փրկութիւնն կը կախուի հասարակաց փրկութենէն: Վենետիկ մի անգամ յաղթուելով՝

նոցա վրայ պիտի հանի արշաւանք, հրդեհ, կործանութիւն, ցից։ Երբ Յոյնն, Եգիպտացին, Գենուացին իրենց նաւատորմիղները յառաջ կը մղեն, երբ Գերմանացին, Թուրքն կամ Դաղմատացին կը շարժեն իրենց բանակները՝ նոյն պահուն փոքրագոյն Վենետակեցին, վաճառական մը, նաւաստի մը, նաւածեփիչ մը, լաւ գիտէ՝ թէ իր վաճառականութիւնն, իր ռոճիկն, նոյն իսկ իր անդամքն վտանգի մէջ են։ Այս հաստատուն հասարակութեամբ վարժեցաւ նա միաբան գործելու, ինքզինքը հայրենեաց մասն համարելու, անոր հետ միասին նախատուելու և վիրաւորուելու, անոր վրայ զարմանալու, ուրիշները արհամարհելու, ինքն իրմով իսկ պարծենալու իբրև զինուոր ազնուական, աշխարհակալ և ճարտար բանակի մը, որ իրեն հետ իբր զօրավար առած սուրբ Մարկոսը՝ Աստուծոյ սիրելին՝ նորա հետ ի միասին կ՚ընթանայ։ Այս կերպով վառուած մարդ մը շատ զօրաւոր է։ Ինչպէս որ ինքզինքը մեծ կ՚ըմբռնէ, նոյնպէս մեծամեծ գործեր կը կատարէ. վեհանձնութիւնն կը կրկնապատկէ իր սահմանին զօրութիւնը՝ զոր անձնական շահն վաղուց տարածեր էր։ Թո՛ղ նկատուի արդի քաղաքի մը կեանքն, Բուսան կամ Տու-

լուզ, մարդկանց համախմբութիւն մը, ուր իւրաքանչիւր ոք չափաւորեալ ոստիկանութեան մը ներքեւ առանձինն կը սնանի ու կ՚աճի ինք զինքը միայն մտածելով, մեղկօրէն զբաղած հարստանալու կամ զուարճանալու, շատ անգամ ինքզինքը ճնշելու և մարեցնելու. նկատեցէք ազատ քաղաքի մը յանդուգն կեանքն, ինչպէս հին Աթէնքը կամ վաղեմի Հռովմը, ինչպէս Գենուա և Պիզա միջին դարու մէջ, ինչպէս սոյն այս Վենետիկն. փոքրիկ աւան մը ձկնավաճառաց, տղմի վրայ կառուցուած, առանց հողոյ և ջրոյ, առանց քարի և փայտի, որ տիրապետելով կը գրաւէ իւր ծովածոցին եզերքները, Կոստանդնուպոլիս, Արքիպեղագոս, Պեղոպոնէս և Կիպրոս. կը ջախջախէ եօթն ապստամբութիւնս ի Զարա և տասնուվեց ի Կրետէ, կը նուաճէ զԴալմատացիս, զԲիւզանդացիս, Կայիրէի սուլտանները և Հունգարիոյ թագաւորները. Բոսփորի մէջ կ՚արձակէ հինգ հարիւր առագաստաւոր նաւուց տորմիղներ, կը սպառազինէ երկու հարիւր ցռկանաւերու խումբ մի, երեք հազար նաւեր ի միասին թիավարել կու տայ. ամեն տարի գալիոններու տորմիղներով մէկտեղ կը միացնէ զՏրապիզոն, զԱղեքսանդրիա, զՏունիս, զՏանգեր, զԼիս-

*քան և զԼոնդրա, միով բանիւ՝ հնարելով ճարտարութիւն մը, ճարտարապետութիւն մը, նկարչութիւն և եղական ոսկերչութիւններ՝ կը գտանայ նա արուեստական գոհար մը, մինչդեռ իւր նաւերն և զինուորք ի Կրետէ և ի Մոռէա կը պաշտպանեն զԵւրոպա՝ վերջին բարբարոս յափշտակողաց դէմ: Իւր գործօնէութեան և անգործութեան հակապատկերով պիտի իմացուի, թէ ընկերութիւնն ի՛նչ բան կրնայ ընդունիլ ի մարդոյ, և թէ ի՛նչ բանի մարդս կարող է յանդգնաբար ձեռք զարնել և հնարել, երբ պետութիւնն զինքը զերագոյն և հայրենասէր կ'ընէ, թէ ի՛նչպէս քաղաքապետական հին վարչութիւնն՝ զոր մենք թողուցինք և Վենետիկ կը նորոգէ, կը զարգացնէր արիութեամբ և հանճարով՝ մի միայն խուրձի մը վրայ կանգնելով և կապելով իշխանութիւնները, զորս մենք կը թողունք որ առանձին միան և ապականին մեր ահագին պետութեանց մէջ:*

*Երբ ընկերութիւն մը այս կերպով կը զարգանայ ինքն իրեն, կ'ունենայ նա իւր յատուկ ճաշակը և արուեստը. ապա և անկախ կեանքն յառաջ կը բերէ եղական ստեղծումներ, և հնարագիտութիւնն գործոյ ասպարէզը բեղմնաւորելէն յետոյ՝ կը մտնէ ի-*

մտացականութեան շրջանակին մէջ։ Բան մը միայն կարեւոր է մարդուս, որ է՝ խնամել իր մէջ ունեցած կենդանի աղբիւրը. Թո՛ղ իւրաքանչիւր ոք պահպանէ իրենը, չթողու որ պղտորի և ցամքի, և միշտ հոսի. և ապա յաջողաբար և առատօրէն յառաջ պիտի գան գործք, փառք, իշխանութիւն։ Վենետկեցիք գնացին ի Կոստանդնուպոլիս և անկէ բերին իրենց եկեղեցւոյն համար բոլորակ ձեւերը, կամարակապ յօրինուածքը, գնդաձեւ կամարներն՝ որոնք կը ճոխանայր բիւզանդական ճարտարապետութիւնն. բայց նոքա զատոնք իրենց երկրին վրայ երկրորդելու ժամանակ կը փոփոխեն, անոր համար ալ սուրբ Մարկոս այնչափ կը տարբերի սուրբ Սոփիայէն, որչափ անպաճոյճ՝ հնարագէտ և աշխարհակալ ազգ մը կը տարբերի մեծափառ և կանոնաւորեալ պետութենէ մը։ Ճարտարապետք կը մրմռան զայն տեսնելով, անդ ամեն մի քայլին կը տեսնուին կանոնաց զարտուղութիւնք և ոճերու խառնուրդ մը։ Ջեն կրցած կամ գուցէ չեն յանդըգնած այս շարժուն գետնին վրայ սուրբ Սոփիայի ահագին գմբեթը գաղափարել. բայց իր բոլորակութիւնքը ախորժեր են, և փոխանակ մեծ մը միայն շինելու՝ հինգ հատ

բանաստեղծութիւնը՝ որով ճոխացուցեր էր զինքը արեւելքի տեսարանն ։

Այսօր՝ սուրբ Մարկոսի տօնն է. կանայք, փոքրիկ աղջկունք իրենց սեւ քօղով, մանիշակագոյն կրկնակներով, երկայն վայրաքարշ շըրջազգեստներով, գոյնզգոյն հագուած ամբոխ մը կը վխտայ զաւիթներու ներքեւ և կը ծածանի եկեղեցւոյ մէջ ։ Նոքա ծունր կը դնեն սալաքարերու վրայ, ձեռօք կը դըպչին անագապղնձէ խաչելութեան մը ոտքերուն և իրենք զիրենք կը խաչակնքեն. ոմանք ալ իրենց աղօթքները կը փսփսան, և փող կը ձգեն գանձանակին մէջ, զոր կը շըրջեցնեն ողորմութիւն խնդրելով « աղքատ մեռելոց համար » ։ Բարձրաստիճան եկեղեցականաց թափօր մը կարգաւ կը յառաջէ, որոց սպիտակագոյն կամ ոսկեգոյն խոյրերն և ոսկեզրուագ շուրջառներն կը տեսնուին սիւնամոյթերու քովէն անցնելու ժամանակ ։ Կը հնչէ երգ մը՝ տարօրինակ և գեղեցիկ, սաստիկ բարձր և ծանր ձայներէ բաղկացած, տեսակ մը նոյնաձայն երաժշտութիւն՝ որ զուցէ Բիւզանդիոնէ եկած է. Նուագածուք ծածկուած են, չի՛ գիտցուիր, թէ ո՛ւսկից կ՚ելնէ նուագերգութիւնն, որ կը ծածանի և կը բարձրանայ կարմրորակ և մթագոյն օդոյ մէջ,



Վենետիկ. – *Սուրբ Մարկոս* (էջ 45)։

ինչպէս աննիւթ ձայն մը պարիկի կամ ոգւոյ մը՝ փայլփլուն նկուղին մէջ։

Այս տեսարանս աննման է իւր շքեղութեամբն և նորութեամբ։ Կու գայ մարդ դիտելու սուրբ Մարկոսի գեղեցիկ և զուարթ հրապարակը, իւր շքեղ սիւնազարդ ճեմելիքը, երկնքի ճոխ կապուտակը, միջոցի մէջ ծաւալուած լոյսը։ Անկէ աստիճան մը վար կ'իջնես, և աչքերդ իսկոյն կ'ընկղմին՝ անծանօթ ձևով շինուած փոքրիկ սրբարանի մը մութ ծիրանի գոյնին մէջ, որ լի է փայլմամբք և աղօտ ցոլմամբք, խճողուած և սեղմուած իբրև սարրին սենեակ, ուր իսրայելացի մը՝ փաշայ մը կը պահեն իրենց գանձերը։ Ամեն գոյներէն աւելի երկու սաստիկ գոյներ կը պատեն զայն՝ գաւթէն մինչև ի գմբեթ. մին՝ կարմրորակ երակաւոր մարմարիոնի գոյնն, որ կը փայլփլի սեանց բուներուն վրայ, կը դրուագէ որմերը, կ'երևի սալաքարերու վրայ. միւսն՝ ոսկւոյ գոյնն, որ կը պատէ գմբեթները, կը դրուագէ մուսաիկները, և իւր միլիոնաւոր թեփերով կը ճեղքէ լոյսը։ Կարմիր՝ ոսկւոյ վրայ և ստուերի մէջ, այսպիսի գոյն մը չէ կարելի երևակայել։ Ժամանակն մթնցուցեր և խանգարեր է զայն. տեղւոյ ցնցումէն ճեղքուած մարմարեայ սալայա-

տակին վրայ կը փայլփլին շիկագոյն պայծառութեամբ գմբեթներու մէջէ մէջ գծերով զարդարուած բոլորակութիւնքն. իր լոյսը կ՚ ընդունի միայն բոլորագլուխ փոքրիկ որմածակերէն՝ որոնք պատուած են բոլորակ՝ ապակիներու շրջանակով։ Անթիւ ձեւեր, քանդակազարդ սիւնամոյթք, անագապղինձք, բազմաստեղնեան ճրագարանք, հարիւրաւոր միւսիոնք, շրջանակաւոր զարդանկարուց եւ անարուեստ պատկերաց ասիական շռայլութիւն մը՝ փոշիի պէս կը ծաւալի օդոյ մէջ, ուր խունկն կը շրջեցնէ իր պարուրաձեւքն, ուր լուսեղէն հիւլէներու ձեւով կը ծածանին գիշերուան եւ օրուան հակապատկերք։ Աննկարագրելի է ստուերի մէջ թանտուած եւ սփռուած լուսոյ այս իշխանութիւնն։ Աջակողմեան մատուռն գետնափորի մը պէս մութ է. պայծառութեան մնացորդ մը կ՚ երերայ կամարաց կորութեան վրայ։ Շօշափելի մթութեան միջէն վեր կը բարձրանան միայն պղնձէ երեք լապտերք. աչքդ կանգ կ՚ առնու անոնց բոլորակութեանց վրայ եւ կը հետեւի իրենց շարքին որ վեր կ՚ ելնէ, աստղազարդելով գիշերը իր ոսկէթելերով, չգիտեմ ինչպիսի խորութեանց մէջ կորսուելու համար. տեսնելով թէ այս կերպով կ՚ իջնեն աղօտ լոյսերու

շարքի մը ծայրը՝ պիտի կարծուէին մոգական ծաղկի մը խորհրդաւոր պսակներ։ Տասներորդ և երկոտասաներորդ դարուց ճարտարապետք միակ յատուկ զգացում մ՚ ունէին։ Աւելորդ է քննել, թէ արդեօք Բիւզանդացւո՞ց թէ Արաբացւոց նմաններ են. այս սուրբ Մարկոսը՝ զոր Աղեքսանդրիայէն բերեր էին, այս սուրբ առաքեալն՝ որուն երկինքը և հայրենիքը տեսեր էին, կը լնոյր իրենց երևակայութիւնը բանաստեղծութեամբ մը՝ որ անծանօթ էր հիւսիսային բարբարոսաց։ Տխրութիւնն չէ զոր նոքա կ՚ արտայայտեն, և ո՛չ անհագնութիւնն որուն կը հետեւին. հարաւային ուրախութեան յորդութիւն մը կայ իրենց երևակայութեան մէջ, իրենց եկեղեցին տոգորող սաստիկ գոյնին մէջ, փայլփլուն միւսիոններու այս ընդհանուր պատուածքին, այս մարմարեայ երփնազրուագին, այս քանդակածոյ վերնատանց, այս բեմերու և պատշգամներու, այս արաբացի կամ գոթացի ճոխ դրանց մէջ՝ որոց իւրաքանչիւրն պարփակուած է առաքելոց շարքով մը։ Այս հանդիսիս առջեւ, որ իբր տեսիլ մը կը թուի, անյարմարք կը միաբանին և անյաջողակութիւնք այլ եւս չեն զգացուիր։ Աւագ խորանին շուրջը, չորս սիւներ՝ որոնք կը

վերցնեն ամպհովանին՝ կը կորսուին կերպարանքներու տարտամութեան մը մէջ, որոց իւրաքանչիւրն իւր առանձնախորշին մէջ զետեղուած՝ խարախէն մինչեւ ի խոյակ կը դրուագեն սեան բունը։ Եթէ տեսնք մի առ մի նկատուին, անհեթեթ բաներ են. մարդ կը նեղուի տեսնելով անոնց վրայ անկարողութիւն և ունայն խարխափանք։ Ձեռքերն անհամեմատական են, գլուխներն երբեմն մեծ են՝ իբր երրորդ կամ չորրորդ մասն մարմնոյն. գրեթէ ամենուն ալ հասարակ՝ երբեմն նաև տձեւ և ապուշ բաներ են. քանդակագործն անճաշակ կրօնաւոր մ'է որ ժողովրրդեան միջէն կոպտատարազ անձինքը կ'օրինակէ. իւր ձեռքն յանդէտս ծաղրանկար մը յառաջ կը բերէ. սրբուհի մը՝ ուռած այտերով այլանդակ դէմք մ'է, ծիւրական գլխոյ ջրգողութենէ բռնուած. այլք տձեւ հրէշներ են՝ անկարողք ապրելու, իբր եզական բաներ՝ որք կը պահուին անդամազննական թանգարանաց մէջ։ Եւ սակայն անկէ վեց քայլ այնդին, ամբողջական երեւոյթն հրաշալի է. կը գտնէ զմարդ այս շփոթ և թխագոյն ամբոխի խճողումն, որ աստիճանաբար կը բարձրացնէ իւր շարքերը ոսկետերեւ խոյակի մը ներքեւ, և տարտամօրէն կը ծածանի լապտերներու ցոլ-

գոչմանց ներքեւ։ Միջնադարեան արուեստաւորն, անհատը ներկայացնելու անկարող, կ'ախորժի խմբեր և ամբողջութիւններ. Նա հին Յոյնի պէս չըմբռներ անհատական անձին, չաստուածոյն և դիւցազնին կատարելութիւնն' որ ինքն յինքեան կը բաւականանայ. Նա դուրս կ'ելնէ այս սահմանաւորեալ գեղեցիկ շրջապատէն. իւր տեսածն է ժողովուրդ, մարդկային բազմութիւն, խեղճ տեսակն բոլորովին խոնարհած' իբրեւ մրջնակոյտ մը' գերագոյն իշխեցողին առջեւ։ Նա կը թողու անոր վրայ իւր տգեղութիւնքը, իւր տձեւութիւնքը, իւր խեղճութիւնը. շատ անգամ նոյն իսկ զանոնք կը չափազանցէ. բայց գերագոյն և ուժգին երազն, անձկութեամբ խառն ուրախութիւնն, և այն ամենայն որ է բաբախումն և հառաչանք հոգւոց, նա կ'ըմբռնէ զանոնք և կ'արտայայտէ. և եթէ մենք բնաւ չենք տեսներ իւր ձեռագործին մէջ անկախ և կատարեալ մարդոյ այրական և առողջ մարմինը, մենք անոր մէջ կ'որոշենք ռամիկ ժողովրդեան ներքին զգացումը և սրտի սիրավառ բարեպաշտութիւնը։

Ահաւասիկ այս է որ կ'ոգեւորէ այնպիսի անհարթ միւսինները' որովք զրուագուած են որմերն, կամարներն, փոքրիկ անկիւններն։

Ստոյգ է, թէ կոստանդնուպոլսէն արուեստա-
ւորներ բերել տուեր են. Հին արուեստի սնո-
տի բաներն և մանկական արուեստի ան-
բաւականութիւնն ամեն կողմ բազմապատկեր
են մարդապատկերները, որոց կիսուածա-
նկար աչքերն այլ եւս նայուածք չունին: Դրան
մուտքին վերեւ կայ Աստուածածին մը, որ
մարմին չունի, վերարկուի ներքեւ ծածկուած
կմախք մ'է: Մկրտութեան աւազանաց մատ-
րան մէջ գտուող խորանին վրայ կայ Քրիս-
տոս մը, որ բնաւ մարդկային կերպարանք
չունի, իբր թէ անոր ներսը պատարկած ըլ-
լային. և կը տեսնուի միայն աժգոյն մորթ մը՝
չգիտեմ ի՛նչ թոյլ նիւթով անկանոն կերպով
լեցուած: Ոսկեհիւս կարմիր պատմուճանով
Հերովդիադա մը իր կնգմենի թեզանեաց
ծայրը՝ կը ցուցնէ իր նիհար կրծոց ցամքած
կոճերը: Տեսնելու է հրեշտակաց այլանդակ
ոտքերը, որոց փորուած խոշոր աչքերը, ա-
մեն անձանց կծկած, ակարացած անշարժ
դէմքն: Եւ սակայն, որչափ խեղճ ալ որ ըլ-
լան կերպարանքն, նոր ժողովուրդն՝ որ սահ-
պուած է զանոնք հին ժողովրդէն փոխ առ-
նելու՝ անոնցմով ներդաշնակ և գեղեցիկ ամ-
բողջութիւն մը կը կազմէ: Նուիրական և
հետաեւակ գործուածն իբրեւ բեկոր մը կը մնանէ

ներշնչուած և հարազատ ձեռագործին մէջ։ Այս հեռաւորութեամբ և այս չափազանց առատութեան մէջ այլ եւս չեն տեսնուիր նիհար և մեքենական ձեւեր։ Անոնք ամբոխի մը մէջ իբր գլուխներ կը տեսնուին։ Աչքերդ կը շրջապատուին սրբոց խմբով մը, անսահման պատմութեամբ մը, բովանդակ երկնային սրբոց վարուց քաղուածոյքով մը, կը մոռնան մանրամասնութիւնը, կը տեսնեն արքայութիւն մը և չեն մտածեր անոր բնակիչքը հաշուել կամ քննադատել։ Դիւցազն և բարեպաշտ հին վենետիկն այսպէս ըրած է. և ահա թէ ի՛նչու այնքան դարուց մէջ շռայլեց նա իւր հարստութիւնքը, իւր աշխատութիւնը, իւր աշխարհակալութիւնքը։ Անոր հաւատքին հարեւանցի տեսած գաղափարական աշխարհն է այդ՝ որ նոյնքան կենդանի և բազմամարդ է ինչպէս իրական աշխարհն. սոքա են իւր պաշտպան սուրբքն, իւր պատրիարքներն, իւր հրեշտակներն, իւր Տիրամայրն՝ զորս կը նշմարէր նա այս կերպարանաց միջէն, որք կը կենդանանային ծիրանեգոյն լուսով, և գմբեթներու կարմրափայլ ոսկւով։

*Սուրբ Յովհաննէս և Պօղոս*[1]. — (*Փրանճիսկեան*) *Արեղայից եկեղեցին*[2]. — *Գուատտամելյատայ հոյակապ շիրիմն*. — *Դքսերու դամբանքն*. — *Իւրաքանչիւր դարու ոգւոյն զանազան դրոշմներն քանդակագործութեան մէջ*. — *Միջին դարն, Վերածնութիւնն, եօթնեւտասներորդ դարն, արդի դարն*. — *Տիտիանոսի նկարն* (*Մարտիրոսութիւն սրբոյն Պետրոսի*). — *Տինտորետտոյ*:

*26 ապրիլ.*

ԳՈՆԴՈԼՆ կ' անհետանայ հիւսիսային կողմէն ամայի փողոցաց մէջ: Ջրոյ ցոլմունքն կ' երերան կամուրջներու զոգաձեւ աղեղաց մէջ, իբրեւ ճիւղանկար մետաքսեայ ասուեղէն մը, վարդագոյն, սպիտակ և կանաչորակ: Քաղաքէն դուրս կ' ելնես, կէսօր է, երկինքն սաստիկ գունատ: Խորած լաստերն՝ անշարժ ջրոյն միահարթ մակերեւութին վրայ կ' երկայնեն իրենց թրջած և փայլփլուն գե-

1. SS. Giovanni e Paolo.
2. La Chiesa dei Frari.

րանները ։ Դիմացը կայ պարսպապատ կղզի մը, գերեզմանոցն, որ իւր անհարթ սպիտակութիւններով կը գծէ բոցավառ սպիտակութիւնը. աւելի հեռուն, երկու կամ երեք առագաստանաւք կը վազվզեն ջրանցից մէջ. հորիզոնին վրայ, լերանց միգամած շղթայն կը պարզէ յերկինս իւր ձիւնեղէն ծոպը ։ Փանեկաձեւ ցռուկն ջրէն դուրս կ՚ելնէ իբրեւ տարօրինակ ձուկ մը՝ որ կը լուղայ պոչն առջեւէն, և իւր սեաւ կերպարանքն ճեղքելով ջուրը՝ յառաջ կ՚երթայ ոսկեգոյն ալեակներու անթիւ փայլփլմանց միջէն, խորին լռութեամբ։

Դատարկ հրապարակին վրայ կանգնուած է, յամին 1475 Վերոկքիոյի ձեռամբ շինուած Կօլլեւոնի ձիաւոր արձանն, որ Իտալիոյ մէջ երկրորդ ձուլածոյն է, սոյզ պատկեր՝ ինչպէս Գուատտամելատայինն ի Պատաւիոն. զօրավարի մը խրական պատկերն, նստած իւր պատերազմական տոկուն ձիոյն վրայ, զրահաւոր, բաց սրունքներով, կիսանդրին խիստ կարճ, հին զինուորի մը դաժան դէմքով որ կը հրամայէ և կը գոչէ, ոչ ընաւ գեղեցկաձեւ, այլ կենդանի և ազդու ։ Դիմացը կայ սուրբ Յովհաննէս և Պաւղոս, գոթացի եկեղեցի մը (1236–1430), իտալական գոթաձեւով, որ և այս պատճառաւ ալ գուարթ է.

բոլորաձեւ սեւամոյթքն, լայն և ընդարձակ կամարներն, ապակիներն, գրեթէ ամենքն սպիտակ՝ մարդուս մտքէն կը հեռացնեն տըխրազդեցիկ և խորհրդական գաղափարները, զորս կ'ազդեն հիւսիսային ամեն մայր եկեղեցիք։ Ինչպէս Պիզայի գերեզմանատեղին [1], ինչպէս փլորենտիոյ սուրբ Խաչն, եկեղեցին խճողուած է դամբաններով. միացուցէք հոն նոյնպէս Աբեղայից եկեղեցւոյն դամբաններն եւս. հասարակապետութեան հոյակապ շիրիմն է այս։ Մեծաւ մասամբ հնգետասաներորդ կամ վեշտասաներորդ դարու առաջին տարիներու գործեր են, քաղաքին պայծառ ժամանակին, յորում մեծամեծ մարդիկ և մեծամեծ գործք՝ որոնք կը վախճանին՝ տակաւին այնչափ արդի ժամանակի կը վերաբերին, որ նոր սկսող արուեստն չէ կարող ընդունել անոնց պատկերը և զայն ճշդիւ բացայայտել. միւսներն կը ցուցնեն այս մեծ լուսոյն առաւօտը. այլք եւս կը ցուցնեն անոր խոնարհումը, և այսպէս գերեզմանաց շարքի մը վրայ կը տեսնուի մարդկային հանճարոյ պատմութիւնն իւր ծագմանէն սկսեալ, իւր այրական հասակին միջոցը, մինչեւ իւր անկումն։

1. Campo Santo.

1382ին վախճանող Մոռոզինի դքսի շիրմին վրայ իր ամենայն շքեղութեամբք՝ կը տեսնուի զուտ գոթացի ձեւն։ Ծաղկազարդ կամարակապ մը դրասանգօք կը զարդարէ իր ժանեկաձեւ քանդակները մեռելոյն վրայ։ Երկու կողմերէն կը բարձրանան երկու սիրուն աշտարակիկներ՝ զորս վեր կը վերցընեն օրինակներ, որք և զարդարուած են տուուստաձեւերով, բանուած արձանիկներով, ցցուած մեծ և փոքրիկ զանգակատներով. տեսակ մը նուրբ բուսականութիւն, ուր մարմարիոնն կը ցցուի և կը բացուի իբրեւ փշոտ տունկ մը, որ միանգամայն կը ցուցնէ իր սլաքները և իր ծաղիկները։ Դուքսն կը ննջէ, ձեռքերը խաչաձեւ իր կրծոց վրայ։ Ահա սոյգ գերեզմանական յիշատակարաններ․ անկողնոց մը, երբեմն իր սրսկապանով կամ իր սրահակով,[1] մարմարեայ անկողին մը քանդակուած և դրուագուած, իբրեւ փայտեայ տախտակ մը՝ որոյ վրայ կը հանգչէին գիշերը կենդանի մարդոյն հինաւուրց անդամքն, և ներսը, իր սովորականին պէս հագուած մարդն, խաղաղ իր քնոյն մէջ, վստահ և բարեպաշտ, վասն

1. Դամբան Թովմաս Մոկենիգոյ դքսին, 1423

զի նա իր կենաց պարտքը լաւ կատարած է. ճշմարիտ կերպարան առանց չափազանց պերճութեան և տագնապներու, որ և կը թողու վերջամնացներու ծանր և խաղաղական պատկերը՝ զոր իրենց յիշատակին պէտք է պահել։

Ահաւասիկ միջնադարեան լրջութիւնն։ Սակայն արդէն կրօնական անաչառութեան ներքեւ կը սկսի զարգանալ զգացումն կենդանի մարմնաւոր ձեւերու, որք պիտի ըլլան հետագայ դարու յատուկ գիւտն։ Մարկոս Կոռներ դքսի հոյակապ շիրմին մէջ, առուստաձեւերով ժանեկաձեւ եղած և նրբարուեստ փոքրիկ զանգակատներով ծածկուած հինգ կամարանկիւն կամարակապերու մէջտեղ, Առաքինութիւնքն, երկայն պարեգօտներով զուարթ հրեշտակներ, կը նային ինքնայօժար և ուշագրաւ արտայայտութեամբք։ Գիւտի այս արշալուսոյն մէջ, արուեստաւորն կը փորձէր դիմագծերը, գլխոյն կերպարանքները՝ զորս վերջին վարպետք մէկ կողմ թողուցին, պատշաճութեան պատճառաւ և կանոնաց հնազանդելու համար։ Այսու, Վերածնութիւնն՝ որ արուեստը դասական ազնուութեան կը վերածէր՝ ստուգիւ զայն փոքրկացոյց, ինչպէս որ մեր եօթնեւտասներորդ դարու յատակա-

մոլքն աղքատացուցին մեշաստանները գա-
րու ճոխ լեզուն ։

Որչափ կը յառաջես, կը տեսնես նոր ա-
րուեստի նշան մը ։ 1400ին վախճանող Ան-
տոն Վենիէր դքսի գամբանին վրայ, Վերա-
ծնութեան հեթանոսութիւնն՝ զարդագործու-
թեան մանրամասնութեամբ մը՝ միահարթ
կ՚ընէ խեցակերպ որմախորշերը ։ Ամբողջ մա-
ցածն նոյնպէս անկիւնաւոր է և ծաղկազարդ,
գողարիկ կերպով թել թել եղած, գոթացի
թէ՛ քանդակագործութիւնն և թէ ճարտարա-
պետութիւնն ։ Գլուխներն ալ նոյնպէս սա-
կաւիկ մի ծանր են, անհեթեթ, չափազանց
կարճ և երբեմն գալարուն պարանոցի մը վրայ
կեցած ։ Արուեստաւորք իրականը կը գաղա-
փարեն.՝ նոքա դեռ որոշ ընտրութիւն մը չը-
րին համեմատականութեանց մէջ, չեն գիտեր
յոյն անդրիագործաց կանոնը, տակաւին նո-
քա զբաղած են կեանքը հետազօտելու և
անոր նմանելու. բայց իրենց անյաջողու-
թիւնքն սիրուն են ։ Աստուածածինն որ չա-
փազանց ծռած պարանոց մ՚ունի, կը սեղ-
մէ իւր որդին ա՛յնքան կենդանի խանդաղա-
տանօք մը ։ Ո՛րքան ազնուութիւն և պար-
զութիւն կը տեսնուի փոքրիկ աղջկանց այդ
քիչ մը բոլորակ գլուխներուն վրայ ։ Հինգ կու-

տանք, իրենց խեցակերպ որմախորշից մէջ կեցած, կ'արտայայտեն պատանեկութեան և իրականութեան այնքան ազդու թարմութիւն մը։ Ոչինչ այնքան կը յուզէ զիս՝ որքան այս քանդակները, որոնք կը վերջանայ միջնադարեան արուեստն [1]։ Բոլոր այս ձեռագործք հնարուած, ազգայինք, եթէ կ'ուզէք՝ երբեմն պարզ քաղաքայինք են, բայց անհամեմատ կենդանութեամբ մը։ Դասական զեղեցկութեան պայծառ և ստիպիչ տիրապետութիւնն բնաւ եկած չէր բարեկարգելու ինքնատիպ հանճարներու խանդը. նահանգային արուեստաներ կային՝ որք յարմարցուած էին կլիմային, գաւառին, զիրենք շրջապատող սովորութեան ամբողջութեան, որոնք դեռ արտաքսուած էին ճեմարաններէն և մայրաքաղաքներէն։ Աշխարհիս մէջ ոչինչ կը բաղդատուի ճշմարիտ ինքնագիտ սեպհականութեան, ներքին և կատարեալ զգացման, գործի մը մէջ դրոշմուած բոլանդակ հոգւոյն. այն ժամանակ

1. Բաղդատեցէք Բրիտանիոյ վերջին դքսի դամբանին քանդակքն՝ որ ի Նանտ, նոյնպէս Բուրգոնեայ և Փլանդրիոյ վերջին դքսերու դամբանաց քանդակքն՝ որ ի Դիժոն և ի Բրու. նաև Կարոլոս Ը.ի որդւոց դամբանաց քանդակքն՝ որ ի Տուր։

*ձեռագործն այնքան սեպհական է և այնքան ճոխ երփներանգներով՝ որչափ այն հոգին։ Անոր հաւատք կ՚ընծայուի. մարմարինն տե֊ սակ մը օրագիր կը դառնայ, ուր աւանդ թո֊ ղուած են մարդկային կենաց ամենայն մտեր֊ մութիւնք։*

*Եթէ մի քանի քայլ յառաջես, հետեւե֊ լով դարու[1] ընթացքին, կը զգաս արուես֊ տի այս պարզութեան և բնականութեան աս֊ տիճանաբար նուազիլը։ Դամբանական շի֊ րիմն կը փոխուի դիւցազնական փառաւորու֊ թեան մը։ Բոլորաձեւ կամարակապք կը պար֊ զեն իրենց ազնիւ կորագիծը մեռելոյն վրայ։ Արաբական նկարք զուարթագին կը ծաւալին ողորկ շրջանակներու վրայ։ Սիւներն կարգ կարգ կը շարուին բանալով իրենց ականթէ խոյակը. երբեմն սոքա միմեանց վրայ կը շա֊ րուին, և ճարտարապետական չորս կարգերն կը պարզեն համակ իրենց զանազանութիւնը՝ աչքերը զուարճացնելու համար։ Այն ժամա֊*

1. *Դամբանքն Պ. Մոկենիգեայ, վախճանեալ ի* 1476. – *Մարկեղեայ, վախճանեալ ի* 1474. – *Բոնտիոսի, վախճանեալ ի* 1508. — *Լորեդանի, վախճանեալ ի* 1509. — *Աքեղայից եկեղեցւոյն մէջ գտնուող դամբանքն Նիկողայոսի, վախճա֊ նեալ ի* 1473. — *Պեզարոյի, վախճանեալ ի* 1503։

նակ դամբանն կ'ըլլայ վիթխարի յաղթական կամար մը. ոմանք քսան արձաններ ունին, գրեթէ բնական մեծութեամբ։ Մահուան գաղափարն կ'անհետանայ. մեռեալն այլ եւս պառկած չէ՝ սպասելով յարութեան և վերջին օրուան, նա նստած է և կը նայի. « նա կը կենդանանայ » մարմարիոնի մէջ, ինչպէս ճառոմաբար կ'ըսէ տապանագիր մը։ Նմանապէս իր յիշատակը զարդարող արձանքն աստիճանաբար կը փոփոխուին։ Հընգետասաներորդ դարու մէջ, դեռ շատ անգամ ասոնք կոշտ և նեղուած են. պատանի պատերազմողաց սրունքներն քիչ մը նիհար են, ինչպէս Պերուգինի հրեշտակապետացն. նոքա կը կրեն ծնկապաններ և առիւծագլուխ մուճակներ, յորս կը խառնուին աւատական զէնքերու յիշատակներն հին տարագի զարմանաց հետ։ Մարմինք և գլուխք, ամենն իրականին կը մերձենան. կերպարանաց գերազանցութիւնն կը կայանայ իրենց ակամայ լըջութեան, իրենց ուժգին և պարզ արտայայտութեան, իրենց կեցուածքի ուժոյն և իրենց սեւեռեալ ու խոր նայուածքին մէջ։ Վեշտասաներորդ դարու մերձենալովն՝ դիւրութիւն և շարժումն կ'ընդունին։ Ասուեղէնք կ'ոլորուին և կը տարածուին առատօրէն զօ-

բուէր մարմնոց շուրջը։ Մկանք կ՚ ուռին և կ՚ երևին։ Միջնադարեան դեռահասակ տղեկտք այժմ ըմբիշք են և չափահաս պատանիք։ Կուսանք, անշարժք և կնգուղը գլուխնին դրած, իրենց անպաճոյճ կրկնոցին մէջ կը սկսին ժպտիլ և յուզուիլ։ Անոնց յաւնական ճմռթկուած և վայրաքարշ պարեգօտներն կ՚ երևցնեն իրենց տակից նուրբ ձեւը։ Նոքա՝ խոնարհած, կէս մը գլխիվայրք, կողմնակի ծռած, գոռոզաբար վեր կանգնած և երազկոտ, կը ցուցնեն գալարուած տսուեղինաց տակէն կենդանի ձեւոյն զանազանութիւնքը, և աչքն կը հետեւի ներդաշնակ կորագծերու մարդկային գեղեցիկ էակին, որ ի հանգստեան, ի շարժման, ամեն դրից մէջ, միայն կ՚ ապրի երջանիկ և կատարեալ ըլլալու համար։

Ամենէն աւելի գեղեցիկ կ՚ երեւին նոքա 1470ին վախճանող Վենդրամինի դքսի դամբանին վրայ։ Արուեստն դեռ հոն պարզ է և իւր նախկին ծաղիկ հասակին մէջ. վաղեմի լրջութիւնն ամբողջովին կեցած է. բայց բանաստեղծական և նկարչական ճաշակն՝ որ կը սկսի զարգանալ՝ հոն կը հեղու արդէն իւր հարստութիւնը և իւր պայծառութիւնը։ Ոսկեբոյլ կամարակապերու ներքեւ, կորնթական

սիւներու անջրպետաց մէջ, պատերազմողք և հնաձեւ հագուած կանայք կը նային կամ կ՚ողբան։ Բոլորովին անշարժ կեցած են նոքա, բնաւ հետամուտ չեն այլոց ուշադրութիւնը իրենց վրայ դարձնելու։ Իրենց ամբողջ մարմինն է, իրենց լայն և շքեղ մազն, իրենց այնքան քիչ երփնագոյն դէմքն է՝ որ կը խօսի։ Կին մը տխրութեամբ աչքերը երկինք կը վերցնէ. ուրիշ մը, կէս մը գետին խոնարհած, աղաղակ մը կը հանէ. Ցուլհաննէս Բեքլինի նկարներն պիտի կարծուին։ Դոքա այն զօրաւոր և սահմանափակ շրջանին կը վերաբերին, յորում նախատիպ օրինակն, ինչպէս և արուեստագէտն, հինգ կամ վեց զօրաւոր զգացմանց ենթարկուած, զանոնք կրելու համար ի գործ կը դնէ իւր բովանդակ զգայնութիւնը և կ՚ամփոփէ ճգի մը մէջ ամբողջ կարողութիւններ, որք ի վերջոյ պիտի նուազին վայելից ձեռքով և պիտի չքանան մանրամասնութեանց մէջ։

Վեշտասաներորդ դարուն բոլոր մեծամեծ խանդք կը վերջանան։ Շիրիմք՝ մեծամեծ մեքենական կազմածք կը դառնան։ 1669[1]

1. Աբեղայից եկեղեցւոյն մէջ։

կալի մը վսեմութիւն ունի, և իր կինն գան-
գրահեր, խորշոմած, գալարուն կտաւներ հա-
գած, գողարիկ կերպով վեր կը վերցնէ իր ձախ
ձեռքը՝ հասութաւոր դքսուհւոյ մը կերպարանօք։
Ստորեւ, Յաղթութեան չաստուածն կը պսա-
կէ վքարի ծերունին, որ Բելիսարիոսի ազ-
գական կը թուի, և բոլոր իւր շուրջը գտնուող
խորաքանդակներն կը ներկայացնեն շնորհա-
լի և զգայուն կանանց խումբեր՝ որոնք դահ-
լճի վայել շարժմանց մէջ են։

Այս ամենն թէպէտ խանգարուած արուես-
տի գործեր են, սակայն դարձեալ նոցա մէջ
կը տեսնուի արուեստ. այսինքն է՝ քանդա-
կագործն և իւր ժամանակակիցք անձնական
և իսկական ճաշակ մ՚ունէին. նոքա իրենց աշ-
խարհին և իրենց կենաց մէջ կը սիրեն ինչ
ինչ իրեր, անոնց կը նմանին և զանոնք կը
զեղեցկացնեն, իրենց նախամեծար համարածն
չէ ճեմարանի իր մը, դաստարակութեան գործ
մը, գրքերու իմաստակութիւն մը և պայմա-
նաւոր նախամեծարութիւն մը։ Ուրիշ ոչինչ
մեր դարուն մէջ։ Կանովայի դամբանն՝ որ
իւր յատուկ ծրագրոց վրայ շինուած է՝ ցուրտ,
անճաշակ և չափազանց արուեստակեալ ըլլա-
լուն պատճառաւ՝ ծաղրական է. սպիտակ
մարմարիոնէ մեծ բուրգ մը կը գրաւէ տե-

սուլթեան· բոլանդակ ապարէզը. դուռը բաց է . հոն ուզեր է հանգչիլ արուեստաւորն , ինչպէս փարաւոն մը իւր շիրմին մէջ ։ Դէպ ի դուռն կը յառաջէ թափօր մը զզայուն կերպարանաց , Ատալաներու , Եւդորներու , Կիւմոդոկեայց , մերկ ոգի մը՝ որ կը ննջէ մարելով իւր ջահը , ուրիշ մը կը հառաչէ՝ գլուխը զողտրիկ կերպով խոնարհեցուցած , ինչպէս Բիտոբէի փոքրիկ Ցովսէփն ։ Թեւաւոր առիւծ մը յուսահատ կ՚ողբայ , ցռուկը իւր թաթերուն վրայ դրած , և իւր թաթերն գրքի մը վրայ . քսան վայրկեան պէտք է գրագէտ ուսուցչի մը մեկնելու համար այս այլաբանական թատերախաղը ։ — Անոր դիմացը դրած են հէգ Տիտիանոսին դամբան մը կամարակապ սրահի ձեւով , փայլուն և ողորկ արքունեաց ժամացուցի մը նման զարդարուած չորս գեղեցիկ հոգեսպաս և մտախոհ կիներով , երկու թշուառ ծերունիներով՝ որք ազդու նայուածք՚ մ՚ունին և դուրս ցաքող և սուր մկանքներ , երկու երիտասարդ թեւաւոր վարսայարդարներով՝ որոնք պսակներ կը կրեն ։ Գիտի ըսուի , թէ այս արուեստաւորք զուրկ են ո՛ և է յատուկ տպաւորութենէ , որոնք իրենք իրենցմէ ըսելիք բան մը չունին , մարդկային մարմինն իրենց հետ այլ

եւս չի խօսիր, բռնադատուած են փնտռել ի֊
րենց Թղթապանակներուն մէջ գծերու յօրի֊
նուածներ, և բոլանդակ իրենց տաղանդն կը
կայանայ կարեւոր բառերծուած մը յարմար֊
ցընելու մէջ, ըստ վերջին պասագրոցն նշանա֊
գիտութեան և գեղեցկագիտութեան։ Սակայն
մահն բան մ՚է, և Թուի Թէ կարելի է ա֊
նոր վրայ խօսիլ առանց գրքի. սակայն ես
կը կարծեմ որ մենք այլ եւս անոր գաղա֊
փարը չունինք, ինչպէս ո՛ր և է ծայրայեղ
իրի մը։ Մենք զայն կը մերժենք մեր մըտ֊
քէն՝ իբրեւ անպատշաճ և ատզտկալի հիւր
մը. երբ մենք կը հետեւինք յուղարկաւո֊
րութեան մը, պատշաճութեան համար միայն
կ՚երԹանք, և խօսելով մեր մերձաւորին հետ
գործոց կամ գրականութեան վրայ. մենք
դուրս ելած ենք ողբալի վիճակէն։ ԵԹէ մեծ
դժբաղդութիւն մը նշմարենք հորիզոնին վրայ,
շատ շատ սակարանի հարուած մ՚է՝ որ զմեզ
պիտի անցընէ առաջին յարկէն չորրորդ յար֊
կը։ Մեր երեւակայութիւնը լեցնողն է զա֊
նազան անքաւութիւն մը փոքրիկ հաճոյից
կամ տագնապներու, այցելութեանց, գրուա֊
ծոց, խօսակցութեանց, պայմանաժամերու, և
այլն։ Մենք ցրուած և հանգստացած ըլլա֊
լով, մեր հոգւոյն և փորձառութեան ո՞ր մա֊

սամբ պիտի ըմբռնենք անձկութիւնքը, խոր և սոսկալի սարսափները, լքեալ և մարմնաւոր ուրախութիւնքը՝ որք երբեմն կը բարձրանային լերանց պէս մարդկային կենաց հաւասարութեան վրայ: Արուեստն կ'ապրի մեծամեծ կանխորոշութիւններով, ինչպէս քըննադատութիւնն ալ խառնուածոյ փոքրիկ երփներանգներով. այս պատճառաւ է որ մենք աւելի քննադատ ենք քան թէ արուեստաւորք:

Մի և նոյն գաղափարը մարդուս միտքը կու գայ, երբ կը դիտէ նկարները: Սուրբ Վարդարանի նուիրուած եկեղեցւոյ մատրան մէջ կը գտուին անոնց զարմանալիներն: Մին Տիտիանոսինն է, Մարտիրոսութիւն սրբոյն Պետրոսի վերոնացւոյ: Դոմինիկին կրկին նկարած է այս նիւթը ի Բոլոնիա. բայց անարգ երկիւղ մը կը սգեղացնէ անձնաւորութիւնքը: Տիտիանոսիններն պատերազմողներու պէս մեծ են: Ցնցմամբ կըծկած դէմքի մը ճապաղող և ցաւալից աղղումն չէ որ զանիկայ զմայլեցուցեր է, այլ ոճիրի մը հզօր շարժումն, հարուածող բազկին ձկտումն, վազող փախստականի մը շարժուն հանդերձքն, մեծղի բարձրութիւնն ծառոց՝ որք արեան և զինուց վրայէն կը տա-

րածէն իրենց մութ ոստերը։ Դեռ աւելի ազդու է Տինտորետտոյի խաչելութեան պատկերն։ Անդ ամեն ինչ կը շարժի և վեր 'ի վայր կ'ըլլայ. լուսոյ և ստուերի բանաստեղծութիւնն կը լնու օդը փայլփլուն և տխուր հակապատկերներով։ Դեղնորակ լուսոյ ցայտում մը կը ցոլանայ լայնքէն մերկ Քրիստոսի վրայ, որ կը թուի փառաւորեալ մեռած մարմին մը։ Անոր վերի կողմն սուրբ կանանց գլուխներն կը լուղան պայծառ օդոյ վտակօրէն հոսման մը մէջ, և չար աւազակի մարմինն, վայրենի և գալարուած, բարձրաքանդակ կը յօրինէ երկինքը իր կարմրորակ մկանքով։ Խռովայոյզ և ուժգին օրուան այս փոթորկին մէջ, թուի թէ խաչերն կ'երերան և պատժաւորք կը գահավիժին. և ի լրումն կսկծագին յուզման և մեծատեսիլ խռովութեան, կը տեսնուին անոր խորերը, լուսաւոր ծուխի մը ներքեւ, կոյտ մը կանգնած մարմիններ՝ որք յարութիւն կ'առնուն։ — Որմոց բովանդակ բարձրութիւնն ծածկուած է այս տեսակ նկարներով՝ որք մի և նոյն արուեստի գործեր են։ Քրիստոս երկինք կ'ելնէ, և նորա շուրջը մեծամեծ մերկ հրեշտակներն միջոցի մէջ՝ ուժով իրենց փողերը կը հնչեցնեն։ Գալարուած փոքրիկ հրեշտակ-

ներու խուռն բազմութիւն մը վեր կը վերցնեն զադուրը կոյսն, մինչդեռ նորա ներքեւ առա-քեալք կ'աղաղակեն և գետին կ'ընկնին։ Ամեն կողմերէն, ամեն նկարներու մէջ լոյսն կը թրթռայ· չկայ օդային հիւլէ մը որ չե-րերայ, և կեանքն այնպէս առատօրէն կը զեղու՝ որ դուրս կ'ելնէ և կը վխտայ քա-րերէն; ծառերէն, երկիրներէն, ամպերէն, ամեն գոյնէ և ամեն ձեւէ անշունչ բնութեան ընդհանուր յուզմանէն։

---

Շրջագայութիւնք. — Ճիուդեկկա. — Յիսուսեայք[1]. — Յիսուսեանք.

27 ապրիլ.

ԱՄԵՆ օր կը տեսնեմ Տիտիանոսի, Տինտորետտոյի, Պ. Վերոնացւոյ նկարները. սակայն դեռ չեմ ուզեր անոնց վրայ խօսիլ, կատարեալ և չափազանց ճոխ աշխարհ մ'է այն. մանաւանդ այս Տինտորետտոյ տարօրինակ է, Վենետկոյ մէջ միայն կարելի է նորա վրայ գաղափար մ'առնուլ։

Այսօր ամբոխն կ'երթեւեկէ դէպ ի Պարտիզի Տիրամօր եկեղեցին[2], տեսնելու համար իւր մեծամեծ նկարները, Ոսկեղէն հորթի երկրպագութիւնը, Վերջին դատաստանը։ Եկեղեցին գոց է, նկարները վերուցեր, փաթթեր, զետեղեր են՝ չես գիտեր ո՛ւր. շէնքն երեսի վրայ թողուած կը թուի. կողմնակի կործանուած վանք մը կայ, որ տախտակաց մթերանոցի տեղ կը ծառայէ. ղալար և խիտ խոտն կը ծլի կամարակապերու եր-

1. I Gesuati.
2. Chiesa della Madonna dell'Orto.

կայնութեամբ։ Ահաւասիկ իմ ամենամեծ տհաճութիւններէս մին վենետկոյ մէջ։

Գոնդոլավարն քաղաքին հիւսիսային կողմէն շրջան մը կ'ընէ, և այս լուսոյ դաշտավայրին առջեւ կը մոռցուին ամենայն սրտանեղութիւնք և պարապ եղած յոյսերն։ Զի ձանձրացուիր բնաւ ծովէն, անսահման հորիզոնէն, ցամաքային հեռաւոր փոքրիկ գոտիներէն՝ որք տարտամ դալարութեան մը ներքեւ վեր կը բարձրանան, ինչպէս նաև գրեթէ ամայի ժողովրդական տարօրինակ փողոցներէն՝ ուր կ'երերան տներու աղխաններն՝ ջրէն մաշուած, ուր խեցիներով պատուած ցիցերու ստորոտն այնպէս բարակցեր է՝ որ կը վախես թէ արդ պիտի կտրի։ — Սուրբ Յոբ կ'երեւի, վերածնութեան դարու փոքրիկ եկեղեցի մ'է այս, արտաքուստ սպիտակ և անշուք, բաց ի իւր մէկ նրբազարդ և շքեղ դռնէն։ Ներսը՝ զարդն խճողուած է՝ Կղոդիոս Պեռոլի յիշատակարան մը ճոխ բայց անարուեստ սեաւ մարմարիոնէ սափորի մը վրայ ի ցոյց դրած է ննջած փոքրիկ հրեշտակ մը, գէր և առոյգ, կարծես փլանդրիական քերովբէից ազգականն. աւելի վարը, կնքագիտական կենդանեաց անարուեստ շքեղութեամբ մը կծկած են պսակազարդ ա-

ուծք։ Իտալիոյ մէջ եկեղեցի մը որչափ զարդարուած և խանգարուած ալ ըլլայ, միշտ իր մէջ գեղեցիկ կամ հետաքրքրական բան մ՚ունի. զոր օրինակ, հոս կայ Պարիս Բորդոնի ընտիր նկար մը, մեծամօրուս ծերունի սուրբ մը, որ իր խաչը կը տանի երկու ընկերաց մէջ. և ճիշդ քովը սիրուն քառանկիւն մը սիւնազարդ, որք կամարակապերով իրարու հետ միացած են, և որոյ ականթի տերեւներով պաճուճուած ջրամբարն կ՚երեւի հարթ սալայատակի մը վրայ։ Ահաւասիկ այս շրջագայութեանց վայելքն. չես գիտեր ի՛նչ հանդիպելիքը. իբր բովանդակ բեռն, երկու կամ երեք անուանք ունիս գըլխոյդ մէջ. անշարժ և մեղմով կը սահիս ջրոյ վրայէն. ոչ ոք քեզի հետ կը խօսի. կ՚անցնիս ոսկեզօծ, նկարներով խճողուած եկեղեցւոյ մ՚առջեւէն, քառորդ մասն քանդուած և միայնակ։ Մարմնէդ դուրս ելած կը թուիս, և բարերար ոգի մը կը հաճի հոգւոյդ առջեւէն տեսիլներ և խօլական երեւոյթներ անցընել։

Գոնդոլն կը բռնէ սրբուհի Քիարայի եկեղեցւոյն երկայնքը և Արսենան դաշտի արտաքին կողմը։ Ջրոյն միջոցներն աւելի կ՚ընդարձակին, և հովիկն դանդաղօրէն

կը գլորտկէ երփնազարդ ծփանքը, աննկարագրելի խառնուածով մը թաթաւուած և ձուլուած գոյներու։ Բնաւ սովորական ջուրն չէ աստ։ Ջրանցից մէջ փակուած, մարդկային գաղթականութեան կաթկըթմամբք և սպրդմամբ պղտորուած՝ իւր վրան առած է հողային կարմրութիւններ, կաւաքարային սմոյն գոյներ, կապուտակ և սկային սեւութիւններ, այնպէս որ դէզ մը պարձեր է այն՝ մի և նոյն տաստակի վրայ միասին խառնուած քսան գոյներու։ Հիւսիսային երկընքի մը տակ, տխուր պէտք էր ըլլալ այգ-արեւու լուսաւորութեան և պղտորիկ կապուտակեայ մետաքսին ներքեւ՝ զոր կը տարածէ հօս բոլանդակ երկնային գմբէթն, նա գրեթէ բնական հաճոյքով մը կը լնու աչքերը։ Ստուգիւ կը լողաս լուսոյ մէջ։ Երկինքն կը հեղու զայն, ջուրն կը գունաւորէ և ցոլմունք կը հարիւրապատկեն. մինչեւ իսկ սպիտակ և վարդագոյն տներն կը ցոլացնեն զայն, և ձեւերու բանաստեղծութիւնն կը լրացնէ օրուան բանաստեղծութիւնը։ Այս երեսի վրայ թողուած խեղճ թաղին մէջ իսկ կը տեսնուին սիւնազարդ պալատներ և ճակատներ։ Միջակ կամ աղքատ տներն ունին վանդակասիւներով պատուած մեծամեծ պատըշ-

գմբեթներ, աշտարակաձևերով ժանեկաձև եղած կամ կամարանկիւններով գլուխը զարդարուած պատուհաններ, տերևներով և փշերով հիւսուած հարթ քանդակներ։ Երազն վրայ կը հասնի, և չես ուզեր անոր միջէն դուրս ելնել։ Ֆիրուզեկեային գրեթէ դատարկ Ջրանցն իր գեղեցիկ նաւահանգիստը շէնցընելու համար զուր տեղ կը սպասէ նաւատորմիղներու. կ'երազես գոյներու և գծերու վրայ։ Երեք գիծք և գոյնք կը կազմեն բովանդակ տեսարանը. շարժուն, լրթագոյն և մթագին առատ վճիտ ջուրն, որ փայլփլուն թանձր գունով մը կը պտուտկի. վերը՝ հրաշալի բարձրաքանդակով զատուած՝ շէնքերու շարքն՝ կ'երկայնէ իր կորութիւնը. հուսկ ապա աւելի վերը՝ պայծառ, անսահման և գրեթէ տժգոյն երկինքն։

Նաւավարն ցամաք կը հանէ և կը ստիպէ՝ թէ պէտք է Յիսուսեանց եկեղեցին տեսնել։ Խառնակարգ վիթխարի սեանց պերճ ճակատ մը կ'երևի՝ յետոյ խմբարան մը՝ որոյ կորնթական սիւներն՝ արուեստակեալ կերպով ագուցուած է լայն սիւնամոյթերու մէջ. կողմնակի կան փոքրիկ մատուռներ, որոց յունական ճակատներն ունին կորաձև նեցուկներ. խայտախարիւ մարմարիոնէ ըր-

բուագ մը, բազմաթիւ արձաններ, անճաշակ և հարթ քանդակներ, ձեղունի վրայ գարդասենեկի գեղեցիկ նկար մը, մերկ և վարդագոյն նուրբ սրունքներ. — Համառօտ ըսել, ցուրտ շռայլութիւն և ցոյց մը մեծածախ պաճուճանաց։ Իտալական ութեւտասներորդ դարն վատթարագոյն է քան զմերն։ Մեր ձեռակերտք միշտ չափի մը մէջ կը մնան, վասն զի նրբութիւն մը կը պահեն. իսկ անոնք յաղթանակաւ մը կը հանգչին տարօրինակութեան մէջ։ Երէկ ասոր նման ուրիշ եկեղեցի մ'այլ տեսայ, Յիսուսեանց եկեղեցին։ Որմերու և ձեղունին վրայ գրուագուած կը տեսնուին ծաղիկներ և տերեւներ՝ կանաչ և սպիտակ մարմարիոններով։ Կամարներու վրայ ոլորուն ոսկւով գծագրուած են անօթներ, մանրազարդեր և պատուածներ, և ամբողջութիւնն կը նմանի թաւշակերպ և ոսկեզօծ դահլճի թղթի մը, որոյ զինն փորձութեան մէջ պիտի ձգէ մեծատուն մը։ Անթիւ սափորներ, քնարներ, բոցակերպ զարդեր, տերեւներ, և սպիտակ փունջեր կը քանդակեն զմբէթը։ Սպիտակախայտ կանաչ մարմարիոնէ ոլորուն սիւներ վեր կը բռնեն խորանի ամպհովանին, ուր կը սիգան նիհար և գգայուն արձաններ, այսինքն է Քրիստոսն խաչաբարձ, Հայրն

*Աստուած նստած սպիտակ մարմարինէ ահագին գունտի մը վրայ, զորս կը կրեն հրեշտակք. երկուքն եւս պատսպարուած են խայտաւոր մարմարինէ տանիքի մը ներքեւ, այնքան տարօրինակ՝ որ չես կրնար ծիծաղդ բռնել։ Անհեթեթ ճոռոմութիւնն մինչեւ իսկ ճարտարապետական մեծ գծերու մէջ կը փայլփըլի. նոքա չեն գոհացած սովորական ձեւերով. այնքան լայնցուցեր են իրենց խմբարանի կամարը՝ որ կամրջի մը կորութեան նմաներ է, զոր և պատսպարեր են գմբէթներով, որք վահանի մը խորոչին կը նմանին։ Կը զգաս երեւակայութեան ճիգը՝ որ ի զուր կ՚աշխատի, և որոյ արդիւնքն է՝ չափազանց և սեթեւեթեալ իմաստներու ճոռոմաբանութիւն մը, որ ուռուցիկ և ողորկ ըսուածներով կը յօրինէ դահլճի պաշտամունք մը տիկնանց և աշխարհասիրաց համար։*

*Անկեալ դարու ամենայն յիմարութիւնք կ՚անհետանան մեծ դարուն երկու պատկերաց դիմաց։ Առաջինն է Տինտորետտոյի նկարն՝* Վերափոխումն Ս. Կուսին. *Աստուածածնայ շիրմին չորս կողմը՝ ծերունիք խոնարհած կ՚ապշին ողբերգական շարժմամբք. նոքա այն տիրական և կուշտ գլխոյ կերպարանքներ ունին՝ որք շատ լաւ կը յարմարին՝ Վենետկոյ նկարիչ-*

ներու գործոց մէջ՝ աստեղինաց սաստիկ ճը-մըռթկման և ստուերի, լուսոյ ու գունոյ զօ-ւոր արդեանց հետ ։ Աւելի վերը, սուրբ Կոյսն կը պտուտկի, և իւր մանիշակեայ պարեգօտին ոժգոյն, թաթաւուած և փոփոխական երանգ-ներն աւելի եւս զգալի կ՚ընեն իւր կորովի թուխ դէմքը, իւր փոքրիկ ճակատը, իւր վայրահակ մազերը, իւր այրական կեցուածքը ։ Հասարակ կին մը, դշխոյի մը պէս ազգու և շքեղ, ահաւասիկ այս է աչքերու զարնող երեւոյթն. ո՛չ մի նկարիչ ասկէ աւելի ախորժած չէ պերճութիւնը և ուժոյ անկեղծութիւնը ։ Տինտորետտոյ փողոցաց մէջ վաճառուհի կամ նաւավարուհի մը կը տեսնէ, և նորա ամ-բողջ և վայրենի պատկերը կ՚առնու, զայն կը քողարկէ ազնուական և արեւելեան փայլ-մամբ իշխանական սովորութեանց, նորա չորս կողմը կը լեցնէ բազմաթիւ թեւաւոր գլուխ-ներ, և զանոնք կը տարածէ մինչեւ առաքելոց լաթերուն վրայ ։ Բնաւ չի վրդովիր նա, եթէ երբեք իւր հրեշտակաց թուիչն նմանի կտրուած գլուխներու սկաւառակի մը. Նա իւր վայրկե-նական երեւումը՝ մէկ շնչով կտաւի մը վրայ փոխադրելով՝ կը թողու կ՚երթայ, իւր ձեռա-գործն կատարուած է ։

Միւս պատկերն է Տիտիանոսի սուրբ

Լաւրենտիոս մը, որ կը թուի իտալացի Ռեմբրանտի երեւակայութիւն մը, ստուերի մէջ տեսիլ մը։ Գիշեր է. ի սկզբան՝ աչք անագին սեւութիւն մը միայն կը նշմարեն, որ տարտամօրէն կը բծաւորուի երկու կամ երեք լոյսերով։ Ընդարձակ փողոց մ'է այս։ Ներքնատան մէջ մարող ջահի մը գոյնի նըման տմոյն գոյնի մը մէջ կը տեսնուին ճարտարապետութիւնք, արձան մը, հեռաւոր ամբոխ մը։ Երկաթէ վանդակի մը մէջ փակուած տեսակ մը ջահ՝ գաւազանի մը ծայրը՝ կը լուսաւորէ տարօրինակ լապտեր մը, և կրակին բոցն կը տարածէ սալայատակին վրայ իր չարագուշակ կարմրութիւնքը։ Անոր մօտ, պոռոզ գահիճ մը, իբր խեղճ բեռնակիր, ետեւը կը ծռի, և իւր կրծոց մկանքն կ'ուռին գինեգոյն տեսլեամբք և սաստիկ դուրս ցցուելով իւր հերակլեան մարմնոյն վրայ. անոր չորս կողմն սեւ ցոլմունք կ'անդրադառնան գլահից վրայ կամ կը դողդղան նիզակաց կապուտակ պողովատին վրայ։ Սակայն երկնից վերէն կ'իջնէ լուսոյ ցայտում մը, ճեղքելով մթութիւնքը իբրեւ փառք մը. լուսաւոր գիծն կը հասնի մարտիրոսի սպիտակ մարմնոյն վրայ, ցոլացնելով իւր անցքին վրայ գեղնորակ փայլումները, աղօտ բարախումները և ստուերի փոշիներու խորհրդաւոր թրթռումը։

*Թատրոնք. — Սովորոյթք և կերպարանք. — Թշուառութիւն. — Տուրք. — Հասարակաց ոգին. — Դատարկութիւն և երազ ի Վենետիկ։*

27 ապրիլ.

ԱՅՍ երեկոյ դէպ ի Բենեդիկտեան Թատրոնը։ Ի դարձին, կէս գիշերուան միջոցները, հազիւ լուսաւորուած, ծամածուռ և բարձր տանց մէջ ՚նեղ ընկած փողոցներն կը թուին իբր աւազակուտ տեղիք։

Խեղճ Թատրոն. գրեթէ դատարկ է. անթիւ օթեակներէն քանի չափ հազիւ լեցուեր էն։ Միջնակարգ և նոյն իսկ հասարակ մարդկանց շատն գետնայարկը կը կենան։ — իսկ սրահն գեղեցիկ է։

Այս երեկոյ կը ներկայացուի Մարիամ Ստուարտ, թարգմանեալ ի Շիլլերէ։ Վաղը պիտի ներկայացուի երէց Դիւմայի ուշագրաւ կատակերգութիւն մը, Բէլ—Իլի օրիորդն։ Ես նորա ուրիշ կատակերգութիւններն եւս տեսայ ի Փլորենտիա։ Մենք կը հայթայթենք բովանդակ Եւրոպիոյ երգախաղերը, կատակերգութիւնը, ախորժելի մի-

պասանութիւնները, արդուզարդի առարկայքը և այլն։ Տեսայ օտար երկրի մէջ, մեծամեծ տեարց գրասեղաններու վրայ անհամեստ երգոց հաւաքածոյք, շքեղ գրատանց առաջին շարքին մէջ Պաւղոս Քոքի փառակազմ վիպասանութիւնքը։ Այս մասին կը գտուինք մենք. կաքաւասոյցք, վարսայարդարք, երգախաղուց շարադրողք, լորետք, նորաձեւիչք մեզի ուրիշ տիտղոսք շատ չեն յարմարիր, բաց ի թերեւս գինուոր անունէն։

Թատրոնի անձինք ըստ կարելւոյն խղճալի են։ Երաժշտաց դէմքերն նկարելու արժանի են. կարծես աղտեղի և յօգնած ծեր դերձակներ են։ Ցուցարարն այնպէս բարձր կը փսփսայ, որ իւր ձայնն անընդհատ հաստ ձայն մը յառաջ կը բերէ։ Մարիամ Ստուարտ՝ սեաւ թաշեայ պարեգօտ հագած՝ դռնապանի ձեռքեր ունի. յիրաւի նա ինքն անձամբ կ'եփէ իւր կերակուրը և կ'աւլէ իւր սենեակը. և սակայն նա կորով մ'ունի, տեսակ մը մոլեգին և գազանական ազդուութիւն։ Եղիսաբէթ, կարմիր ոտքով մը պաճուճուած, չնչին զարդերով և ուլունքներով զգեստ հագուած, կը պատասխանէ անոր խեղդուկ և ձուլիչ ձայնով մը. սոքա հրապարակի երկու կանայք են որք վէճի կը բռնուին։ Մոր-

տիմըրը համոզելու համար որ սպաննէ իւր նախանձորդը, նա կը գայրագնի իբրեւ դիւահար մը։ Ամենքն սոսկալի կերպով դէմ կը վկայեն. Թերեւս կարեւոր ըլլայ այս խտալական գետնայարկի մը համար։ Երեք անգամ ետ կանչուեցաւ Մարիամ Ստուարտ տեսարանէն վերջը՝ ուր կը թշնամանէ նա զԵղիսաբէթ։

Երկրորդական թատրոն մ՚է այս։ Փինիկ և գլխաւոր թատրոնք գոց են։ Ազգն այնպէս հակառակ է Աւստրիոյ՝ որ ազնուական մը, անտարբեր կամ քաղաքագէտ, պիտի չիշխէ հոն երթալու. ասիկայ ցնծութեան ցոյց մը պիտի ըլլայ, բարձրաձայն պիտի ծաղրուի։ Այսպիսի հանգամանաց մէջ, հարկ է որ թատրոնք ընկնին։ Եւ սակայն, ամենայն ինչ կ՚ընկնի։ Ճիուդեկկա, որ ահագին նաւահանգիստ մ՚է՝ գրեթէ բնաւ նաւեր չունի. վաճառականութիւնն և առուտուրք Տրիեստի մէջ կ՚ըլլան։ Քաղաքն հաղորդակցութիւնը կտրեց Միլանու նահանգէն մաքսերու պատճառաւ։ Ա՛յլ եւս աշխատութիւնն դադրած է. տխրութիւնն թուլացոյց ամենայն ճիգ և հաճոյքները. ազնուականք իրենց երկիրներու մէջ փակուած կ՚ապրին. պալատներէն շատն կ՚ապականի, ոմանք բոլորովին երեսի վրայ թողուած կ՚ե-

րեւլին ։ Հարիւր քսան հազար բնակչաց մէջ, չորս հազար աղքատք կան, որոց երեսուն հազարն ողորմութեան կարօտ և իրենց անուանքն արձանագրուած են օգնութեանց հաշուեմատեաններուն մէջ ։ Տեսայ ատենակալ Պետրոս Լուղուիկ դքսի տեղեկագիրը չորս վերջին տարիներու համար ։ 780 000 ֆիորին ծախքէն 10000ը գործածուած է դաստիարակութեան համար, 129 000ը բարերարութեան համար, 94 000 ալ հասարակաց ողորմութեան համար ։ Այցելեցի յիմարանոց, և անոր վիճակագրութիւնը ունիմ, յիմարութեանց շատն յառաջ եկած է մորթախտէն[1], անսնունդ կերակրէն, կերուխումի խեղճութենէն ։ Պէտք է ըսել որ տուրքերն անտանելի են ։ Լսեր եմ որ 1000 ֆիորին բերող տան մը 400 ֆիորին տուրք կը վճարուի ։ Կալուած մը, այսինքն է՝ երկիր մը իւր բնակութեան տնով ի միասին 1130 լիրայ կը բերէ, և անոր կը վճարուի 500 լիրայ ։ Ուրիշ տուն մը Վենետիկոյ մէջ վարձուած է 238 ֆիորինով և անոր կը վճարուի 64 ֆիորին ։ Կալուածական ստացուած մը տոկոսաբար իւր եկամուտին երրորդ մա-

1. Pellagre.

մը կը վճարէ ։ Այս խոշոր պատառը միանգամ լափելով, արքունի գանձու ատամունքն եւսէ կ' ըլլան տուրքի տակ ընկնող ուրիշ կառքի մը ։ Բաց ի յաջորդութեան, փոխանցութեան, սպառման և այլ հարկերէն, ինչպէս նաև բնակարանի վճարուած տուրքէն և վաճառականի տարեկան տուրքէն զատ, կայ նաև տեսակ մը եկամուտի հարկ, ինչպէս յԱնգլիա ։ Այս մանրամասն տեղեկութիւնքը ինձ հաղորդող վաճառականի խօսքին համեմատ, այս տուրքն քսաներորդն է ։ Վաճառական մը իր կարծեցեալ շահերուն քսաներորդ մասը տուրքի կը վճարէ, պաշտօնատար մ' ալ իր թոշակին քսաներորդ մասը ։ Այնքան չարագոյն է իրեն, եթէ տարեգլխոյն շահն իր կարծածէն նուազ է ։ Այնքան աւելի չարագոյն, եթէ ոչինչ է ։ Այնքան աւելի չարագոյն, եթէ զայդ կորուստ է ։ Նա ստիպուած է կանխիկ վճարմամբ և երդմամբ իր հաշիւն ընելու ։ Եթէ ապացուցուի, թէ նա իր շահուն մասը մը կեղծած է, առաջին տուգանք մը կը վճարէ. և բաց աստի կ' արժանանայ նաև խաբեբայից վրայ գրուած պատժոյն ։ Այս պաշտաման համար որոշուած լրտեսք կը խուզարկեն զինքը, կը հաշուեն անոր օրական վատնածը թէ իր տան վարձքին համար,

թէ՛ պաշտօնատարաց կամ սպասաւորաց և իւր կերակրոյն. յետոյ կարծիքով կը դատեն իրեն եկամուտը ըստ ծախուց և այն ժամանակ կը ստուգեն իւր յայտարարութիւնը։ Տեսակ մը խուզարկութիւն է այս որ կը վհատեցընէ ամենայն ճարտարութիւն։ Այս թշուառութեան և անգործութեան մէջ՝ միայն օտարականք են, որք դրամ ունին. որուն համար իրերաց հետ կը կռուին։ Իտալիոյ մէջ ուրիշ ոչ մի տեղ աժանութիւն չկայ ճանապարհորդի մը համար. աստ մէկ օր ամբողջ նաւակով շրջագայելու համար հինգ փրանկ ծախք կ՚երթայ. փոքրիկ նշանով մը, գոնդոլավարք շտապած առջեւդ կու գան. նոքա նախանձորդ են իրարու. քեզի կ՚աղաչեն որ շաբաթուան մը համար իրենց նաւակը բռնես և քեզի կը շնորհեն նուազութիւն գնոյ. չկայ քաղաք յորում միջնակարգ հարուստ և գեղեցկասէր մարդ մը ասկէ աւելի լաւ կարենայ հարստանալ կամ իւր երազին ետեւէն երթալ. բաւական է մոռնալ քաղաքականութիւնը։ Ստոյգ է, թէ Վենետկեցիք զայդ չեն մոռնար։ Երբ հարցուցի գեղջուհւոյ մը, թէ այս տեղ սիրելի՞ են Աւստրիացիք, նա ինձ պատասխանեց. « Մենք զանոնք կը սիրենք, բայց դուրսը »։ Իմ խեղճ հինաւուրց գոնդոլավարս,

ինձ հետ խօսելով Թշուառութեան մասին, կը յաւելոյր մխիթարական կերպով. «Գարիբալդի բան մը պիտի ընէ»։ — Կ՚երեւի որ հոս ամենքն, մինչեւ քաղաքապետը, պաշտօնական ատենակալը, հայրենասէր են։ Գիտենք որ յամին 1848 ժողովուրդն՝ կոտրուած սալաքարերու բեկորներով զինուած՝ վռնտեց աւըստրիացի զինուորները և անյաղթելի քաջասըրտութեամբ մը պաշտպանեց ինք զինքը յետ սպառութեան Պիեմոնտեայց ի Նովարրա։ Վերջին պատերազմին մէջ, երբ գաղղիական նաւախումբն երեւցաւ քաղաքին դիմաց, այս զառանցանք մ՚եղաւ, և որ մեծն է սանձուած զառանցանք մը։ Նաւատորմղի Թնդանօթին առաջին հարուածոյն, ապստամբութիւնն կը բորբոքէր. հասարակ մարդիկք, զոնդոլավարք, ամենքն կազմ և պատրաստ էին։ Ծատերն յիմարեցան լսելով զինադադարումը։ Ծատերն գաղթեցին և յետոյ բնակութիւն հաստատեցին ի Լոմբարդիա. նոքա չեն կրնար իրենց մտաց մէջ հաստատել, թէ Վենետիկ՝ որ միայն Իտալիոյ մէջ ազատած էր օտարազգիներէն յընթացս այնքան դարուց, մնայ միայն Իտալիոյ մէջ ի ձեռս օտար ազգաց. Երեւակայեցէք ընտանիքի մը մէջ հինգ կամ վեց քոյրեր՝ որք տիկին կ՚ըլլան, և վերջինն,

ամենէն աւելի գեղեցիկն, սիրուն Մոխրիկը[1] աղախին կը մնայ։

Սակայն, աղախին կամ տիկին, նա ճանապարհորդի մը համար ամեն բանէ աւելի շնորհալի և բանաստեղծական բան մ՚ է. զայն դիտելու ժամանակ պէտք է ճիգն թափել ծանր շահերու և քաղաքագիտական գործոց վրայ մտածելու. Թէ՛ աւստրիացի և թէ իտալացի ըլլան, պարիկներ են։ Հոս բնակիլ պիտի ուզես, և ի՛նչ երազներ պիտ՚ ունենաս վեց ամսուան մէջ, ի՛նչ հաճոյական շրջագայութիւն յարուեստս և ի պատմութեան։ Սուրբ Մարկոսի գրատան մէջ ժամագիրք մը կայ, զոր իւր նրբարուեստ նկարներով զարդարած է Բրիւժի մեծ նկարիչն Հէմլինգ։ Սանուգոյի յիսունեւութ հատոր օրագրութիւնք կան, այսինքն են ամենօրեայ գրութիւնք՝ յորս ամփոփուած կը գտնուի մանրամասնութիւն սովորութից ի սկզբան վեշտասաներորդ դարու, նկարչութեան ամենէն գեղեցիկ ժամանակին մէջ։ Երջանի՛կ է նկարներ սիրող պատմաբանի մը կեանքն, որ կու գայ հոս դիտելու, երազելու, գրելու։ Երկու թիթեղներու մէջ, գրատան ձեղունին վրայ կը տեսնուի Պ. Վե-

1. Cendrillon.

ընացեալ նկարն՝ այսինքն է՝ Երկրպագու-
թիւնն Մոգուց, երկու մեծամեծ ճարտարա-
պետութեանց մէջ զետեղուած անձնաւորու-
թիւնքն, առաջին թագաւորին շքեղ ալեւոր
գլուխն և ճիւղանկար պատմուճանն, իւր ու-
ղեկիցքն, բովանդակ կերպարանաց ծաւալումն,
առաւեղինազգեստ սպասաւորի մը ձեռքը տա-
տանող սպիտակ ձին, բոլորովին վերը երկու
հրեշտակներ, իրենց մերկ սրունից սիրուն
գոյնն, և իրենց վարդագոյն զգեստուց հիանալի
գեղեցկութիւնն, որք մոգական լուսոյ մը մէջ
թաթաւուած կ'երեւին։ Այն գաղափարը պիտի
տանես, որ կը ցայտէ բոլոր այս փառաւորութե-
նէն, այն ուրախարար, զուարթ, լքեալ՝ այլ և
միշտ ազնուական զօրութեան գաղափարն, որ
լի է յաջողութեամբ և երջանկութեամբ։ Մար-
մարեայ սանդուխներէն վար կ'իջնես և ժամա-
նակ անցընելով կը վայելես շռայլութիւն մը,
զոր Եւրոպիոյ ո՛չ մի թագաւոր չունի։ Ցոլ-
մունքներով ալեձեւ երեւոյթ առած սառե-
րին մէջ կը տեսնես մի քանի դէմքեր, որք
արդէն մեծամեծ նկարչաց անձնաւորութիւն-
ներ հայթայթած են. փոքրիկ աղջիկ մը դե-
ղին և շէկ՝ որոյ մազերն կը ցրուին ճակատին
եզերքը և կը շարժին տարօրինակ ոլորուած-
ներով, — յարդէ հին գլխարկի մը ներքեւ

նաւավարի մը դէմքին և պարանոցին մութ և կարմրորակ գոյնն, — ծերունւոյ մը աղեղնաձեւ մեծ քիթն, կրակոտ աչքերն, երկայն գորշ մօրուքն, որ իբր օրինակ գործածուած է Տիտիանոսի նահապետայն, — դեսահասակ աղջկան մը գիրուկ սպիտակ պարանոցն, վարդագոյն այտերն, ծիծաղկոտ դեղեցիկ աչքերն, ծածանուտ մազն՝ որ կը քալէ վեր վերցնելով իւր շրջազգեստը։ Կ՚ըմբռնես հանճարներու արգասաւորութիւնը և ազատութիւնը, որոնք այս թերակատար և ցրուած չնչին շարժառիթներով յառաջ բերեր են այսպիսի ճոխ և վսեմ միաձայնութիւն մը։ Կ՚երթաս Սկլաւոնեան քարափին վրայ դէպ ի փոքրիկ աւազակոյտ մը, զոր ես լաւ կը ճանչնամ, և հոն զովագին ստուերին մէջ կը դիտես արեգական հրաշալի գեղմունքը, քան զերկինս պայծառագոյն ծովը, երկայնաձեւ ալիքները, որք զիրար կը մղեն՝ իրենց թիկանց վրայ երեւցնելով անթիւ և խաղաղ փայլմունքներ, փոքրիկ ալիքները, յարաշարժ ջրոյ պտոյտներն իրենց ոսկեղէն թեփերու ներքեւ. աւելի հեռուն, եկեղեցիները, կարմրորակ տուները՝ որք իբր ողորկ հայելւոյ մը միջէն վեր կը բարձրանան, և պայծառութեան այն յաւէժական հոսումն՝ որ գեղե-

ցիկ ժպիտ մը կը թուի։ — Յառաջ կ՚երթաս մինչեւ հասարակաց պարտէզները, տեսնելու համար հեռաւոր կղզիները, անորոշ աւազակոյտերը և ընդարձակուող ծովը։ Ամեն ինչ անդանոր հարթ է մինչեւ հորիզոնը, հարթայատակ մը փայլփլուն և անթիւ կայծերով, մութ պերօզի կանաչորակ կապուտակով մը։ Աչք պէտք են միշտ կոյս մնալ այս ազդեցութեան ներքեւ։ Աչք ընաւ չեն յագիր դիտելով ցիցերու այդ կոյտերը, որք իրենց սեաւ գծերը կը սփռեն կապուտակին վրայ. այդ միահարթ կղզիները, որք կը յօրինեն փոքրիկ նուրբ գիծ մը ծովուն ծայրը և երկնից ստորոտը՝ աւելի հեռուն՝ զանգակատուն մը, լուսաւորուած տան մը սպիտակ նշանն, որ այս հեռաւորութեամբ ձեռքի մը չափ մեծ կ՚երեւի. և աստ և անդ կը տեսնուի ձկնորսի նաւակի մը շիկորակ առագաստն, զոր դանդաղօրէն կը քշէ հանդարտիկ հողմ։ Սրդ կ՚աւարտես սուրբ Մարկոսի հրապարակին վրայ, ընդ մէջ օշարակի մը և մանիշակաց փնջի մը. կը լսես Բելլինիի կամ Վերդիի այն եղանակներէն մին զոր կը նուագեն շրջուն երաժիշտք։ Սակայն միանգամայն աչքերդ կը վերցնես, լուսաւորուած հրապարակին վերը, դէպ ի յերկինս՝ որ կը թուի արծաթեայ գամերով սլա-

տուած սեւ թաւիշէ գմբէթ մը. կը հետե-
ւիս մայր եկեղեցւոյ շրջապատը, որ սպիտակ
իբր մարմարեայ գոհար մը, մթութեանց մէջ
կը բոլորէ իր սեանց խուրձերը և իր արձա-
նաց ժանեակը: — Ափիոն ծխողի մը պէս
տարի մը պիտի անցընես, և այս աւելի լաւա-
գոյն. կենաց տանելու միակ ազդու միջոցն է,
կեանքը մոռնալ:

---

Վերջին դարերն. — Հետեւողք Եպիկուրեայ. — Կանալետտոի, Գուարդի, Լոնկի, Գոլդոնի, Գոծծի. — Բարեկենդանն։

Գրեթէ այս կերպով գիրենք կարգաւորեցին մարդիկք իրենց անկման հանդուրժելու համար։ Այս գեղեցիկ քաղաքն վերջացաւ հեթանոսաբար՝ թուլութեամբ և հեշտութեամբ, ինչպէս իր քոյրաթիւ յոյն հասարակապետութիւնք։ Մերթ ընդ մերթ կ'երեւի հոն փրանկիսկոս Մորոզինի մը, որ իբրեւ Արատոս և Փիլոպեմէն, կը նորոգէ նախկին աւուրց դիւցազնութիւնը և յաղթանակները. սակայն սկսեալ եօթնեւտասներորդ դարէն՝ փակուած է ընդարձակ ասպարէզն։ Վարչական և սահմանափակ քաղաքն կը տկարանայ իր դրացի հզօր գինուորաց առջեւ՝ ինչպէս Աթէնք և Կորնթոս, կ'անհոգանայ նա և ներողամիտ կ'ըլլայ. Գաղղիացիք, Գերմանացիք կը բռնաբարեն անպատուհաս իր չէզոքութիւնը. նա կ'ապրի միայն, և չի պահանջեր աւելի ինչ։ Իւր ազնուականք զբօսնուլ միայն կը մտածեն. իրեն համար պատերազմն և քաղաքականութիւնն երկրորդական բան մը կը համարուի. նա

քծնող և աշխարհաւէր կը դառնայ։ Կրասեր Պալմայէն և Պաղովինանոյէն յետոյ, ընտիր նկարչութիւնն կ՚ ընկնի. շրջագիծք կը թոյլնան և բոլորաձեւ կ՚ ըլլան. ներշնչումն և զգացումն կը նուազին, ցրտութիւնն և ինքնահնար գիւտն կը տիրեն. չեն գիտեր այլ եւս ազգու և պարզ մարմիններ յօրինել. ձեղուն զարդարիչներէն վերջինն, այսինքն է՝ Տիեպոլոյ, արուեստակող մ՚ է, կ՚ ուզէ որ իւր կրօնական նկարուց մէջ գտնուի թատերախաղ, և իւր այլաբանական նկարուց մէջ շարժումն և արգասիք, նա իւր արուեստովն, վեր ի վայր կ՚ ընէ իւր սիւները, կը կործանէ իւր՛ բուրգերը, կը պատռէ իւր ամպերը, կը ցրուէ իւր անձինքը, այնպէս որ ժայթքող հրաբխի մը երեւոյթ կու տայ իւր տեսարանաց։ Սա՝ ինչպէս և Կանալետտի, Գուարդի, Լոնկի սկիզբն կու տան ուրիշ տեսակ նկարչութեան մը, այսինքն է՝ տեսարանաց և ոճոյ նկարչութեան։ Երեւակայութիւնն կ՚ իջնէ. կ՚ օրինակուին միայն իրական կենաց փոքրիկ տեսարանք և շուրջակայ շէնքերու գեղեցկատեսիլ երեւոյթք. Նմանութիւնք կ՚ առնուին կնգղաւոր զգեստուց, սիրուն դէմքերու, և ժամանակակից տիկնանց պչրող և գրգռիչ շարժուածոց։ Զանոնք կը

ներկայացնեն իրենց արդուզարդով, իրենց ե֊
րաժշտութեան դաս առնելու և անկողնէն ել֊
նելու ժամանակ. կը նկարագրեն սիրուն աղջը֊
կունք, թոյլք և ծիծաղկոտք, չարաճճիք և
ծաղրածուք, ներքին սենեկի ստոյգ դշխոյք,
որոց սնդուսապատ փոքրիկ ոտքերն, ծալլուած
իրանն, խանձարրապատ գողտրիկ բազուկ֊
ներն պիտի գրաւեն մարդկանց աչքերը և
մեծարանքը։ Ճաշակն անհամելու և քաշուելու
ժամանակ միանգամայն կը զտուի և կը նրբա֊
նայ։ Բայց ընկած քաղաքին այս երեկոյն այն֊
պէս անոյշ և փայլփլուն է, ինչպէս վենետկեան
արեգական մուտք մը։ Անհոգութեամբ կ'առա֊
ւելու գուարթութիւնն։ Մատենագրաց յիշա֊
տակարաններու և նկարչաց պատկերներու մէջ
կը տեսնուին միայն հասարակաց և առանձ֊
նական հանդէսներ։ — Մերթ հանդիսաւոր
հացկերոյթ մը փառաւոր դահլճի մը մէջ, որ
զարդարուած է ոսկեզրուագ ձեղունով, բարձր
փայլփլուն պատուհաններով, բոսորագոյն վա֊
րագոյրներով. զառքաշաւոր դուքսն կը ճաշէ
ծիրանազգեստ ատենակալաց հետ ի միա֊
սին. դիմակաւոր այցելուհիք սահելով մը կ'ել֊
նեն տախտակամած յատակաց վրայ, և չկայ
ինչ այնքան շքեղ՝ ինչպէս գողտրիկ վայելչու֊
թիւնն իրենց փոքրիկ ոտից, իրենց դիւրաբեկ

պարանոցաց, իրենց փոքրիկ անամօթ երեքեղ-
ջերեայ գլխարկին՝ իրենց դեղին կամ մարգար-
տագոյն մետաքսեայ ճմռթկուած շրջազգեստից
մէջ։ — Մերթ գոնդոլներու արշաւանք մի, և
ծովուն վրայ, ընդ մէջ սուրբ Մարկոսի և սուրբ
Գէորգայ, կը տեսնուի ահագին Ջիւացուլ[1]
նաւն, իբրև լեւիաթան մը ոսկեայ պա-
տեաններով զրահաւորուած, որոյ շուրջը նա-
ւախմբակներն իրենց պաղպատեայ կառու-
ցով կը ճեղքեն ջուրը։ Կնգղաւոր զգեստով
խուռն բազմութիւն մը արանց և կանանց
կը ծածանին սալաքարերու վրայ. սիրուն կա-
պուտակեայ երկնից ներքև ծովէ փայլփլուն
թիթեղնաքարի մը կը նմանի, ամպոտ ծուէն-
ներով բամբակեայ եղած, և բոլոր չորս կողմը,
իբր թանկագին շրջանակ մը, երր բանուած
և ժանեկաւոր երեւակայական ծրագիծ մը, ծո-
վային ահագին մակերևոյթը կը պատեն Հօգա-
բարձուաց ապարանքն, գմբէթք, պալատք, ծի-
ծաղկոտ ամբոխ մը խռնուած քարափունք։
— Գոլզոնիի հետ մէկ եղած՝ տեարք՝ որք են ի
Պաւիա, Վենետիկ վերադառնալու համար՝ բե-
րել կու տան զբօսանաց մեծ նաւակ մը, վրանաւ
ծածկուած, նկարներով և քանդակներով զար-

1. Bucentaure.



Վենետիկ. — Դքսական պալատ և Ջիացուղ նաւն (էջ 94)։

զարդուած, գրքերով և երաժշտական գործիներով լեցուած. սոքա տասն վարժապետք են, և միայն օրուան մէջ դանդաղ կերպով կը ճանապարհորդեն, ընտրելով լաւ իջեւաններ, զորս եթէ չի գտնեն, կ՛օթեւանին Բենեդիկտեանց հարուստ մենաստանաց մէջ։ Ամենքը մէկ մէկ գործի կը նուագեն, մին ստուարաձայն ջութակ, երեքն ջութակ, երկուքն բարձրասրինգ, մին գալարափող, և ուրիշ մը կիթառ։ Գոլդոնի, որ միայն երաժիշտ չէ, ոտանաւորի վրայ կ՛առնու ճամբորդութեան փոքրիկ դէպքերը և զանոնք կ՛արտասանէ սուրճ խմելէն յետոյ։ Ամեն երեկոյ, սոքա կ՛ելնեն կամրջի վրայ նուագահանդէս մը կատարելու համար, և երկու ծովեզերաց մարդիկք խմբովին կը վազեն հոն, շարժելով իրենց Թաշկինակները և ծափահարելով։ Հասնելով ի Կրեմոնա, ցնծութեան աղաղակներով կ՛ընդունուին նոքա. իրենց մեծ հացկերոյթ մը կը տրուի. նուագահանդէսն նորէն կը սկսի, և տեղւոյս երաժիշտքն նոցա հետ միանալով ամբողջ գիշերը կը պարեն։ Իւրաքանչիւր նոր իջեւան հասնելուն՝ մի և նոյն ցնծութիւնն կը՛ սկսի [1]։ Անկարելի է

1. Գոլդոնի, Յիշատակարանք, Ա. մասն, Գլ. ժբ։

երեւակայել ասկէ աւելի պատրաստական և ընդհանուր համաձայնութիւն մը մտաւորական հաճոյից։ Նորաղանդք՝ ինչպէս Միստոն՝ որք կու գան հոս գիտելու այս տեսակ կեանքը ո՛չինչ չեն ըմբռներ և իրենց հետ գայթակղութիւն միայն կը տանին։ Պօղիբեայ ժամանակին պէս հոս հեթանոսաբար կ՚ըմբռնեն իրերը բարոյական նախապաշարմունք և պարտուց գերմանական գաղափարն բնաւ չեն կրցած հոս ոտք կոխել։ Նորաղանդութեան ժամանակ, մատենագիր մը կը յայտարարէր արդէն, թէ « տեսած չեմ բնաւ վենետիկեցի մը որ կուսակից եղած ըլլայ Լութերի, Կալվինոյ և այլոց. ամենքն կը հետեւին վարդապետութեանց Եպիկուրեայ և Կրեմոնինեայ՝ որ նորա մեկնիչն եղած է և Պատաւիոնի մէջ փիլիսոփայութեան առաջին ուսուցիչ, և կը հաստատէ՝ թէ մեր հոգին, անբան կենդանւոյն պէս, սերման զօրութեամբ յառաջ կուգայ, և թէ մարմնէն բաժնուելէն յետոյ մահկանացու է ․ ․ ․ ․ ․ Եւ այս վարդապետութեան կուսակցաց մէջ կը գտնուի քաղաքացեաց ընտիր մասն, մանաւորապէս անոնք՝ որոց ձեռքն է կառավարութիւնը [1] »։ Ատոյգն ըսելով, նոքա ու-

1․ Ճառ [illegible], յիշատակեալ ի Դարիւէ, հտ․ Դ․ էջ 171։

րէշ նպատակաւ կրօնից չեն հետեւիր, բայց միայն պաշը սանձելու համար. վարդապետութիւն եւ գործադրութիւն, գաղափարք եւ բնազդմունք, նոքա ժառանգեր են հին սովորոյթքը եւ հոգին, եւ իրենց քրիստոնէութիւնն լոկ անուն մ՚ է։ Հնոց պէս, սոքա եւս ի սկզբան եղած են դիւցազունք եւ արուեստաւորք, յետոյ հեշտասէրք եւ երգասէրք. երկու դիպաց մէջ եւս, ինչպէս հիներն, սոքա վերածեր են կեանքը ներկայ վիճակին։ Ուլթեւտաններուդ դարու մէջ, զիրենք կարելի է բաղդատել ընկնալու վրայ եղող Թեբայեցւոց հետ, որոնք կը միաբանէին իրենց ստացուածքը ի միասին ուտելու, եւ մեռնելու ժամանակ կտակաւ կը թողուին իրենց ընչից մնացորդը՝ իրենց սեղաններուն ապագայ մնացելոց։ Բարեկենդանն վեց ամիս կը տեւէ. ամեն դասակարգէ, վիճակէ եւ հասակէ անձինք դիմակաւորք են։ Պարելով եւ երաժշտական գործեօք մէջտեղէն կ՚անցնին ի տես ամենուն թափորք ծպտեալ մարդկանց, որք կը կրեն՝ Գաղղիացւոց, փաստաբանից, գոնդոլավարներու, Կալաբրիացւոց, եւ սպանիացի զօրաց տարազներ. ժողովուրդն անոնց կը հետեւի, կը ծափահարէ կամ կը սուլէ։ Կատարեալ ազատութիւն. իշխան կամ կուսա-

կից, ամենն հաւասար է. իւրաքանչիւր ոք կարող է դիմակաւոր մը նախատել։ Մարդկեղէն բուրգերով «ուժոյ տեսարաններ» կը ձեւացնեն հրապարակաց վրայ. միմոսք բաց տեղ խեղկատակութեան հանդէսներ կը կատարեն։ Եօթն թատրոնք բաց են։ Յանկարծախօս բանաստեղծք կը ճամարտակեն, և կատակերգակք յանպատրաստից զուարճալի տեսարաններ կը ներկայացնեն։ «Չկայ քաղաք մը յորում այսքան վերջին աստիճանի տիրապետէ լրբութիւնն[1]».....։

*Լիդոյ. — Ծովն. — Սուրբ Մարկոսի զանգակատունն. — Քաղաքն, ջուրն եւ աւազք.*

ԱՆԿԱՐԵԼԻ է հոս երազելէն զատ ուրիշ բան մ՚ընել. նոյն իսկ երազելն ալ սխալ բառ մ՚է, վասն զի կը նշանակէ ըղեղի պարզ

1. Տես Տիեպոլոյի՝ բարեկենդանի նկարները, Գոծծիի, Գոլդոնիի, Կազանովայի յիշատակարանքը, Դը Բրոս նախագահին ճանապարհորդութիւնը, և մանաւանդ Մայերի գերմաներէն չորս հատոր գրեանքը, 1795. — ԺԷ դարու մէջ, Ամլոյ դը լա Հուսսէյ, Սէն–Դիդիէ, և այլն։

աղխ անդին պտոյտ մը, տարտամ գաղափարաց երթեւեկ մը. եթէ վենետկոյ մէջ կ՚երազուի, այս՝ կրած ազդեցութեամբք միայն կ՚ըլլայ և ո՛չ գաղափարներով։ Այսօր հարիւրերորդ անգամն է, որ արեւը մտնելու պահուն՝ ես կը դիտեմ ծովու ջրոյն առած նորօրինակ գոյնը շրջակայ աւազակոյտերէն. ասոնք փլորենտեան անագապղնձի խարտեաշ գոյներ են, որոց մէջ ոլորտապտոյտ կը սողան երկայն աղօտափայլք։ Արեւմտեան կարմրութիւնն կը նկարուի հոն և կը փոփոխուի կանաչորակ կամ կարմրորակ նարնջի գոյներով։ Մերթ գոյնն արշալուսային է, իբր մետաքսեայ աստեղէն մը՝ որ կ՚ուռի և կ՚ոլորուի հողմոյն փչմամբն։ Միւս կողմէն, ահագին կապուտակ մակերեւութին անթիւ անտեսանելի ծփծփմունք կը խառնուին, կը միանան և կը սփռեն ընդ մէջ երկնից և ծովու՝ ճառագայթաւէտ սպիտակութեանց հիւսուած մը. նաւակն կը լուղայ լուսոյն մէջ. միայն նորա շուրջը կը տեսնուի կապուտախառն կանաչն, միշտ փոփոխական, միշտ մի և նոյն։

Ժամէ մը. վերջը Լիդոյ կը հասնիս. սա երկայն աւազակոյտ մ՚է, որ կը պաշտպանէ վենետիկը բուն ծովուն դէմ։ Մէջտեղը կայ եկեղեցի մը իւր գիւղովն ի միասին, բոլոր չորս

կողմը պարտէզներ կան՝ որոնք յարդէ խսիրներով պատուած և նորատունկ պտղատու ծառերով լեցուած են, ամենն ալ ծաղկաւէտ։ Ձախակողմն, ընկղմած կը տեսնուի ուղի մի հինաւուրց ծառերու՝ որոնք դալարացեր են նոր գարնան սկսելովը. սոցա բոլորակ գագաթներն սպիտակ են ինչպէս ամուսնացելոց փնջերն։ Ցառաջ կ'երթաս, և երեք հարիւր քայլ անդին կը տեսնես մեծ ծովը, ո՛չ եւս անշարժ և փոփոխական՝ վենետկոյ լճակին պէս, այլ վայրագ և մռնչող, յաւէժական բախմամբ իւր մակընթացութեան և տեղատուութեան, և իւր ալեաց փրփրալից եռացմամբ։ Ոչ ոք կայ այս երկայն աւազեղէն գօտւոյն վրայ. շատ շատ, իրարմէ հեռու, կը տեսնուի թումբի անկեան մէջ պահանորդի մը գորշագոյն լօղիկն։ Բնաւ չի լսուիր մարդկային աղաղակ։ Լռութեան մէջ յառաջ կ'երթաս, և հետզհետէ կը թաղուիս բնութեան միօրինակ ահագին ձայնին մէջ. քայլերդ կը տպուին թաց աւազին վրայ. ոտքերդ կը ճարճատեցնեն խեցիները որք կը ճռճռան. հարիւրաւոր փոքրիկ խեչափառք ծուռ քալուածքով մը խոյս կու տան, և ալիքն զանոնք այնպէս շուտ կը տանի՝ որ իսկոյն գետնին տակ կը ծածկուին։ Սակայն գիշերն վրայ կը հասնի, և

արեւելեան կողմը, դիմացը, ամենայն ինչ կը մթննայ։ Մթութեան մէջ՝ որ երթալով կը թանձրանայ՝ կ՚որոշուին տակաւին նաւերու երկու կամ երեք սպիտակ առագաստք. նոքա կ՚անհետանան. Ջրոյն կանաչորակ գոյներն երթալով կը մթննան և կ՚ընկղմին համատարած գիշերուան մէջ. միայն մերթ ընդ մերթ ալիք մը կը գլորտըկէ իր անորոշ փրփուրը և կը ջախջախուի երերմամբ ընդդէմ ծովեզերաց։ Իբրեւ հեռաւոր որսական շանց խմբի մը խուլ աղաղակ, ամեն կողմերէ կը լսուի անվախճան խեղդուկ մռնչիւն մը, որ՝ միւս զգացմանց թըմրելու պահուն, իր սպառնալեօք հոգւոյն վրայ կը յարձըկի, և այն ժամանակ կը գտնես վենետկոյ մէջ կորուսած գաղափարդ. այսինքն է՝ ծովուն աննուաճելի զօրութեան և չարութեան գաղափարը։

Ի դարձին, արեւմտեան կողմի երկինքն վառած կրակի մը կը նմանի, և տուներու, զանգակատանց և եկեղեցեաց պատնէշն իր անթափանցիկ սեւութեամբ կը գծէ վառվռուն կարմրութիւնը։ Ցիրաւի, պատկերն է այս ահաւոր հրդեհի մը, որ պատահեր է երկրագընտիս տատանմանց ժամանակ, երբ հրաբխային խանձողի ժայթքում մը վեր ի վայր կ՚ընէր գարաւոր բուսականութիւնը։ Կարծես

թէ կատղած հնոց մը կը շողշողէ վարը, աչաց տարածութեան սահմանէն դուրս. սակայն աչաց տարածութեան սահմանին մէջ են կայծերու թուիչքն՝ հանդերձ նսեմ ծիրանի գունով կոճղներուն՝ որք դեռ կ՚այրին, և ածուխներն՝ որք շիջած, իջած և դիզուած են ահագին անտառներու խորտակմամբ և ճարճատմամբ։ Իրենց տխրատեսիլ ստուերքն երկայնելով յանհունս կարմրորակ ջրոյն մէջ՝ կ՚երթան կ՚անհետանան գիշերուան մէջ, որ արդէն իւր պատանքը դրած է բարձր ծովուն վրայ։

29 ապրիլ.

Խոստացայ գրել քեզ վենետկեան նկարչութեան վրայ, և օրէ օր կ՚ուշացնեմ։ Հոս շատ մեծամեծ ձեռագործք կան, և ձեռագործն շատ եզական է. շատ զգացմունք կան, հոս կեանքն լիուլի է և երագ կ՚անցնի. ինչպէս կանաչ և թանձրախիտ անտառի մը մէջ՝ շատ աւելի դիւրին է նստիլ և դիտել, քան ճամբայ մը փնտռել կամ ամբողջութիւն մը ընդգրկել. կը թողուս ինք զինքդ որ երթայ, կը ծուլանաս. միշտ մտքէդ կ՚անցընես՝ թէ պէտք է տեսնել այս կամ այն ինչ բանը։ Օրդ

կ՚ աւարտես յոգնած ու ղալլրած մարմնով և հոգւով. կ՚ ըսես. վաղը։ Երկրորդ օրը, նոր մտածութիւն մը միտքդ կու գայ։ Զոր օրինակ, այսօր, առաւօտեան միջոց, սուրբ Մարկոսի զանգակատունը ելայ։

Վենետիկ ու բովանդակ լճակն կը տեսնուի զանգակատան վրայէն. այս բարձրութեան վրայ մարդկեղէն ձեռակերտք կը նմանին կուղբերու ձեռագործի մը. բնութիւնն կ՚ երեւի, ինչպէս որ է, միայնակ, անհագին, հազիւ քերուած կամ արտատուրուած մեր առօրեայ փոքրիկ կենօք։ Ամենայն ինչ աւազ է և ծով. միահարթ մակերեւոյթ մը միայն կը տեսնուի, գոցուած հիւսիսային կողմէն ձիւնապատ սարերու պարսպով մը, որ և տեսակ մը միջին սահման է ընդ մէջ չոր և խոնաւ տարերց, անքեր վայրենի երկիր մը, մթին աւազներով և փայլփլուն ջրերով նորօրինակ գոյներ առած։ Ծովու ջրոյն աճմամբ և նուազմամբ թրջած կարմրագոյն կղզեակներն եւս ունին թիթեղնաքարի տղօտ ցոլմունք։ Զորս կողմը, ոլորտապատյտ ջըրմուղներն, անշարժ ջրշեղջներն՝ կը խառնակեն իրենց ձեւերուն անքաւ խառնափնդորութիւնը և իրենց կապարագոյն ջրոց մետաղեայ արջնդեղերը։ Անապատ մ՚ է այս, անապատ մը տար-

օրինակ և մեռեալ։ Ձկայ ինչ կենդանի, բաց ի խումբ մի նաւերէն՝ որոնք կը մըտնեն և կը տատանին իրենց նարնջագոյն առագաստից ներքեւ։ Լիդոյի միւս կողմէն, մերթ ընդ մերթ, ամպոց մէջ արեւու ճառագայթ մը անհագին ծովուն վրայ փայլփլուն գիծ մը կը ձգէ, մթագոյն կրկնոց մը կտրող սրոյ փայլի մը նման։ Կարելի է ժամերով կենալ հոս, մոռնալ ամենայն մարդկային շահ, կրկին մեծամեծ իրաց միօրինակ խօսակցութեան առջեւ, այսինքն են՝ գոգաձեւ երկինքն և միահարթ երկիրն, որք կը գրաւեն միջոցը և բնութեան տեսարանը։ Երկուքին մէջ, դեղնագոյն ամպոց խմբեր կը թաւալին փչմամբ ծովային հողմոյն։ Հետզհետէ կը հասնին զոքա լուսնի նուրբ և փայլփլուն մահիկին դիմաց. լուսինն, անդադար կ՚ ընկղմէ իւր նուրբ թիթեղը անոնց գանգուածոյն մէջ, ինչպէս մանգաղն հասունցած ցորեններու հունձքին մէջ։

# ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ



*Կշիռայն. — Խառնուածն. — Արուեստն բովանդակութիւն մ'է կենաց. — Վայրկեանն. — Վիճակ մարդկանց ընդ մէջ դիւցազնական և մեղկ բարուց։*

*30 ապրիլ 1864.*

Շատ աւելի դժուարին է ինձ վենետկեցի նկարչաց վրայ խօսիլ քեզ՝ քան թէ այլոց։ Իրենց պատկերաց առջեւ՝ քննելու և դատելու փափաքդ չի գար. զայդ բռնի միայն կարելի է ընել։ Աչքերն կը վայելեն, և ոչ ա՛յլ ինչ. դոքա այնպէս կը վայելեն, ինչպէս վեշտասաներորդ դարու Վենետկեցւոց աչքերն. վասն զի Վենետիկ Փլորենտիոյ պէս գրական կամ քննադատական քաղաք մը չէր բնաւ. նկարչութիւնն ոչ ա՛յլ ինչ էր անդ բայց եթէ ամբողջութիւն շրջակայ

հեշտալեաց, զարդարանք սեղանատան կամ ճարտարապետական անկողնոցի մը։ Զայն ըմբռնելու համար պէտք է հեռուն նստիլ, աչքերը փակել, և զգացմանց նուազելուն սպասել. այն ժամանակ միտքն իւր պաշտօնը կը կատարէ։ Ահաւասիկ երեք կամ չորս նախապատրաստիչ գաղափարներ. այսպիսի առարկայի մը վրայ՝ կը գուշակուի, կ՚ուրուագծուի, չի գրուիր։

Իտալիոյ միւս բոլոր քաղաքաց մէջ Վենետիկ ո՛չ միայն որիշ, տարբեր քաղաք մ՚է, ազատ ի սկզբանէ և հազար երեք հարիւր տարիներու շրջանին մէջ, այլ նաև Իտալիոյ միւս բոլոր քաղաքաց մէջ որիշ, տարբեր երկիր մ՚է, իւր յատուկ հողով մը, երկնքով մը, կլիմայով մը, մթնոլորտով մը։ Փլորենտիոյ հետ բաղդատելով, որ միւս կեդրոնն է, ջրային երկիր մ՚է այս՝ ցամաքային երկրի մը քով։ Տեսութեան ասպարէզն. հոս մի և նոյնը չէ մարդուս համար։ փոխանակ յստակ շրջագծերու, չափաւոր գոյներու, անշարժ մակարդակներու, աչքն անդադար կը նշմարէ՝ նախ շարժուն և փայլփլուն մակերեւոյթ մը, երփներանգ և անընդհատ լուսոյ ցոլացում մը, զմայլելի խառնուրդ մը երակաւոր և ձուլուած գոյներու,

որք առանց հաստատուն սահմանի կը շարունակուին իրենց շրջակայքը. պարձեալ, կակուղ գոլորշիէ Թափանցիկ պաստառ մը, զոր անընդհատ գոլորշացումն վեր կը հանէ ջրէն՝ ձեւերը քողարկելու, հեռաւորութիւնները կապոյտցնելու և երկնից մէջ տարածելու համար մեծամեծ ամպերը. նոյնպէս հակապատկերն է՝ որ ամեն տեղ դէմ առ դէմ կը դնէ Թանձր, սաստիկ և ջրով փայլփլած գոյնը՝ ծովէ Թրջած շէնքերու աղօտ և քարային գոյնին հետ։ Զոր երկրի մը մէջ աչքի զարնող բանն պէտք է լինել գիծն. իսկ խոնաւ երկրի մը մէջ թիծն։ Այս բանս լաւ կը տեսնուի Փլանդրիոյ և Հոլանդիոյ մէջ. տեսարանն ընաւ հոն յարմարած չէ շրջագծին փափկութեանց, զոր կէս մը կը խառնափընդորէ միջանկեալ խոնաւ օդն. նա կանգառած է երփներանգի ներդաշնակութեանց վրայ, զոր կը կենդանացնէ ընդհանուր Թարմութիւնն և զոր կ'երփնազարդեն շրջասփիւռ գոլորշւոյն փոփոխական խտութիւնքն։ Նմանապէս Վենետկոյ մէջ, ի բաց առեալ այն տարբերութիւնքը որք կը բաժնեն այս լըրԹագոյն ջուրը և տմոյն տղմերով և Ամըստերդամի և Անվերսի ածխային երկնքով ծիրանեգոյն դարձած այս աւազները, աչքն

ճարտար գունաւորիչ կը դառնայ՝ ինչպէս Անվերսի և Ամստերդամի մէջ։ Ասոր ապացոյցն կը տեսնուի Վենետկեցւոց առաջին ճարտարապետութեան մէջ, այն խայտաբղետութեան մէջ պորփիւրի, օձաքարի և թանկագին մարմարիոններու՝ որոնք կը դրուագեն իրենց պալատները, ոսկւով աստղազարդուած այդ մթին ծիրանւոյն մէջ՝ որ կը լեցընէ Սուրբ Մարկոսը, միւսիոնի փայլփլուն գունոց և լուսեղէն բանուածոց մասին ունեցած իրենց այդ եզական և յարատեւակ ճաշակին մէջ, իրենց ամենէն հին ազգային նկարչութեան ուժգնութեան և պայծառութեան մէջ։ Վիվարենիներ, Կարպակիոսներ, Կրիվելլիներ, աւելի ետքը Ցովհաննէս Բելլինի, կ՚աւետեն արդէն ուսուցչաց փայլերը։ Սոքա, որմանկարը շատ աղօտ համարելով, գրեթէ միշտ իւղը գործածեցին. և Վազարի, իբր ճշմարիտ փլորենտացի, կը մեղադրէ զՏիտիանոս «անմիջապէս ըստ բնութեան նկարելուն ու գծագրութիւն չընելուն պատճառաւ, և կարծելուն համար՝ թէ ստոյգ նկար յառաջ բերելու մի միակ և լաւագոյն միջոցն է իսկոյն նկարել նոյն իսկ գոյներով, առանց յառաջուց փորձելու շրջագծերը մատիտով մը թղթին վրայ»։

Երկրորդ և աւելի զօրաւոր պատճառ մ՚ալ այս է, որ մարդուս շրջակայքէն զատ՝ նոյնպէս կլիմայն ևս կը փոխէ իր խառնուածը և իր բնազդմունքը։ Բնախօսք հարեւանցի միայն անցած են այս ճշմարտութեանս վըրայէն, բայց ճանապարհորդի մը համար այդ յայտնի է[1]։ Կենդանի մարմինն կազ մ՚է խառնուած, կազմաւորուած, ընկղմած մթնոլորտին մէջ, հաստատուն նուազմամբ և նորոգմամբ, այնպէս որ մարդն մասն մ՚է իր միջավայրին՝ անընդհատ վերանորոգուած իր միջավայրով։ Ամբողջական մեքենային աւելի կամ նուազ երագ կամ դժուարաւ ծծելուն և դուրս արձակելուն համեմատ իր ձգտումն և իր գործողութիւնք ևս տարբեր են. ուղեղային գործողութիւնք, ինչպէս և միւսներն, կը կախուին հոսանքի արագութենէն կամ դիւրութենէն, որոց՝ միւսներուն պէս՝ նոքա ևս ալիք մ՚են։ Զոր օրինակ, հիւսիսային

1 Ըրած եմ մի քանի փորձեր մտակերութեան արգասեաց վրայ։ Գաղղիացի գործաւորք՝ որոնք երկու անգամ նուազ գործ կը կատարէին քան զանգղիացի գործաւորս՝ մսով կը սնանէին։ Տարիէ մը յետոյ, իրենց աշխատանքի ընդունակութիւնն, այսինքն է՝ ուշադրութեան զօրութիւնն և իրենց մկնային ազդեցութիւնն, կրկնապատկուած էր։

մարդ մը երկու կամ երեք անգամ աւելի կը ծծէ և կը գոլորշացնէ քան թէ հարաւային մարդ մը. և ընդհակառակն, իւր դիւրազգածութիւնն, այսինքն է՝ իւր յուզմանց յանկարծականութիւնն և սաստկութիւնն, երկու կամ երեք անգամ աւելի սակաւ է։ Բաղդատեցէք հոլանդական Ֆրիզի գիւղացի մը կամ ձի մը գաղղիական Բերրիոյ գիւղացւոյ մը կամ ձիու մը հետ, Լոմբարդիոյ իտալացի մը Կալաբրիոյ իտալացւոյ մը հետ, Ռուս մը Արաբի մը հետ[1]։ Մենք տակաւին չենք գիտեր ստուգիւ այն ճիշդ կանոնները որոնք կը կապեն աւելի կամ նուազ ցուրտ ու խոնաւ օդոյ հետ՝, սնունդը, շնչառութիւնը, մկնային զօրութիւնը, յուզման ընդունակութիւնը, գաղափարաց զանազան կարգերուն ծնունդը. բայց այս յայտնի է, թէ այնպիսի կանոնք կան։ Ամեն տեղ և ի հարկէ՝ կլիմայն, բնական խառնուածն և բարոյական շինուածքն զիրար կը բռնեն, ինչպէս շղթայի մը՝ երեք անընդհատ օղերն. այն որ կը խանգարէ առաջինը՝ կը խանգարէ

1. Ուէլլինգտոն կ'ըսէ, թէ «Ուր որ գաղղիական բանակ մը կարեւոր եղածն ունի, հոն սպանիացի բանակ մը առատութեան մէջ է, իսկ անգղիական բանակ մը՝ անօթութենէն կը մեռնի»։

երկրորդը, հետեւաբար նաեւ երրորդը։ Վենետիկ և գետահովիտն Պոյի՝ Իտալիոյ Ստորին–Նահանգներն են. ուստի խառնուածն և բնաւորութիւնն հոն այն եղանակաւ փոխուած է՝ ինչպէս ի Ստորին–Նահանգս։ Ինչպէս Փլանդրիոյ մէջ, նոյնպէս և հոն կը գտնուին սպիտակ և վարդագոյն մարմիններ, գեղին և չէկ մազեր, թանձր մարմիններ, թոյլ և քիչ մը գիրցած, որոնք հակապատկերը կը կազմեն հարաւային Իտալացւոց սեաւ մազերուն, աշխոյժ նիհարութեան, քանդակածոյ և ազնուական դիմաց, զօրաւոր մկանաց։ Ինչպէս Փլանդրիոյ մէջ, նոյնպէս և հոն կը գտնուի սիրավառ ճաշակ զգայական հաճոյից, նորին հետազօտութիւն դիւրակեցութեան, ստորնութիւն գրական կամ հայեցողական մտաց, որք հակապատկեր կը կազմեն այն սուր, խոհական, նուրբ, և մինչեւ ի յատակամոլութիւն դիմող իմացականութեան, որ կը տեսնուի Փլորենտացւոց[1] ամեն գրուածոց և բոլանդակ կենաց մէջ։ Ի սկզբանէ անտի այնքան զուարթ և այնքան քիչ դասական ճարտարապետութիւնն, հնգետասանե-

1. Փլորենտացիք կոչէ (grossolani) կ'անուանէին զՎենետիկեցիս։

րորդ դարէն սկսեալ հեշտասէր շրջանն բարուց[1], աւելի վերջը՝ հաճոյից հանրականութիւնն, վեցամեայ բարեկենդանն, արձանագրուած և անթիւ անհամեստ կանայքն, պետական հաստատութիւն մը դարձած երաժշտութիւնն, ամեն ժամանակ, տարազներու և հանդէսներու շքեղութիւնն, երփներանգ փառաւոր դաղմատական պատմուճանք, մետաքսաճամուկ զառքաշներն, շըռայլ ոսկին և ադամանդք, արեւելեան պերճութեան և երեւակայութեան անընդհատ շփումն, կրօնի մէջ հաստատուած թոյլտուութիւնն և քաղաքականութեան մէջ ներուած անտարբերութիւնն, յորդառատ յաջողութիւնն, խրախուսուած հեշտասիրութիւնն, պատուիրուած անհոգութիւնն, այս ամենայն կը ցուցընէ մի և նոյն նախնական և գըլխաւոր դիրքը, այսինքն է, բանաստեղծութիւնը զգայական կենաց մէջ դնելու յարմարութիւնը, և ցնծութիւնը ու գեղեցկու-

1. Անտոնելլոյ Մեսսինացի, կ'ըսէ Վազարի, գնաց հաստատուելու ի Վենետիկ, ուր մտուց նա իւղաներկ նըկարչութիւնը։ Նա այս քաղաքս ընտրեց, և հոն զինքը շատ սիրեցին ու փայփայեցին ազնուականք, « իւր շափազանց հեշտասէր և պագշոտ անձ մ'ըլլալուն պատճառաւ »։

թիւնը իրերաց հետ միացնելու տաղանդը։ Սա այն ազգային բնաւորութիւնն է՝ զոր նկարիչք կը ներկայացնեն իրենց պատկերաց մէջ. այն է՝ զոր եղածէն աւելի կը գեղեցկացնեն նոքա իրենց երփներանգաց մէջ. սոքա են իրենց ձեռագործներն և իրենց շրջավայրքը՝ զորս ի ցոյց կը դնեն իրենց մետաքսից, իրենց թաւիշներուն և իրենց մարգարտաց մէջ, իրենց վանդակասեանց, իրենց սիւնեարներու և իրենց ոսկեզօծմանց մէջ։ Նա աւելի պայծառ կ'երեւի նկարչաց քով՝ քան եթէ ինքն յինքեան։ Իրենք եղան որ զայն գտեցին, որոշեցին, տեսանելի ձեւով մը մարմնացուցին։ Ամեն տեղ մեծամեծ արուեստաւորքն են պատգամաւորք և թարգմանք իրենց ժողովրդեան, Ցորդանս, Կրեյէր, Ռուբէնս՝ Փլանդրիոյ մէջ. Տիտիանոս, Տինտորետտոյ և Պ. Վերոնացին՝ Վենետկոյ մէջ։ Իրենց բնազդումն և հայեցողութիւնքն զանոնք կ'ընեն բնապաշտք, հոգեբանք, պատմիչք, իմաստասէրք. նոքա կը մտածեն այն գաղափարը որ կը կազմէ իրենց ցեղը և իրենց ժամանակը, և ընդհանուր ու ակամայ համակրութիւնը՝ որ կը կազմէ իրենց հանճարը, կը հաւաքէ ու կարգի կը դնէ իրենց մտաց մէջ, ստոյգ

համեմատութեամբք, անհուն և իրերաց պատահող տարերքն աշխարհիս ուր ամփոփուած կան։ Եւ իրենց ընտրողութիւնն գիտութենէն աւելի անդին կ'անցնի, և իրենց ի լոյս ընծայած գաղափարական ստեղծածն՝ աւելի ազդու բովանդակութիւն մ'է, կեդրոնացած և աւելի կենդանի պատկերն, կատարեալ և որոշիչ դէմքն իրական ստեղծուածոց՝ որոց մէջ նոքա ապրեր են։ Նոքա կաղապարը կ'առնուն՝ յորում բնութիւնն թափեր է իրերը, որ և՝ դժուարահալ ձուլմամբ մը լեցուած, կոշտ և խանգարուած ձեւեր միայն յառաջ կը բերէ, նոքա կը դատարկեն զայդ, անոր մէջ կը հեղուն իրենց մետաղը, աւելի կակուղ մետաղ մը, կը տաքցընեն իրենց հալոցը, և արձանն որ իրենց ձեռքով կ'ելնէ կաւէն, կը կրկնէ առաջին անգամուան համար կաղապարի շրջագծերը՝ զոր նախորդ ձուլումներն աղտերով թաթխուած և կոտրուածներով ճեղքուած՝ չէին կրցած կերպարանել։

Այժմ նկատենք այն վայրկեանը՝ յորում երեւեցան նոքա։ Ամեն ժամանակի և ամեն աշխարհի մէջ, արուեստական ձեռագործները յառաջ բերողն է այն բազմամասն և խառն վիճակն՝ զոր կ'ունենայ հոգին երբ կը գլա-

նուի . ընդ մէջ երկու ղարագլխոց և երկու կարգ զգացմանց մէջ բաժնուած. նա թողլու վրայ է մեծին ճաշակը ախորժելւոյ ճաշակին համար. սակայն մէկէն միւսը անցնելու միջոց նա երկուքը իրարու հետ կը միացնէ։ Հարկ է որ նա ունենայ նաև մեծին ճաշակը, այսինքն է՝ ազնուական ձեւեր և ազդու կրքեր, առանց որոյ իւր արուեստական ձեռագործներն գեղեցիկ միայն պիտի լինէին։ Պէտք է որ նա արդէն ունենայ ախորժելւոյ ճաշակը, այսինքն է՝ հաճոյից պէտքը և զարդարանաց հոգը, առանց որոյ նա գործողութեամբք պիտի զբաղէր և արուեստական ձեռակերտներով պիտի չի զուարճանար։ Այս պատճառաւ՝ անցաւոր և թանկագին ծաղիկն կը բուսնի միայն երկու ժամանակաց իրարու հետ միանալու միջոցին, ընդ մէջ դիւցազնական և եպիկուրեան բարուց, այն պահուն՝ յորում մարդն, տաժանելի և երկայն պատերազմական գործ մը կատարելով, հիմնարկութիւն մը կամ գիւտ մի ընելով, կը սկսի հանգչիլ, անոր շրջակայքը կը դիտէ և կը մտածէ՝ իւր զուարճութեան համար՝ զարդարել ահագին մերկ շէնքը, որուն քարերը շարեցին և որմերը շինեցին իւր ձեռքերն։ Քան զայն յառաջ

շատ կանուխ պիտի լինէր․ նա բոլորովին ճգանց մէջ էր և բնաւ չէր մտածեր վայելից վրայ, իսկ սակաւիկ ինչ յետոյ, շատ ուշ պիտի լինէր այն․ վասն զի նա վայելքը միայն կը մտածէ, և բնաւ չի խորհիր ճըգանց վրայ։ Երկուքին մէջ կը գտնուի միակ վայրկեան մը, աւելի կամ նուազ երկայն՝ հոգւոյն աւելի կամ նուազ երագ կերպարանափոխութեան համեմատ, և յորում մարդիկներն՝ տակաւին զօրաւորք, ուժգինք, ընդունակք պերագոյն յուզմանց և յանդուգն նախաձեռնութեան, կը թողուն որ թուլանայ իրենց ամուր պիրկ կամքը՝ սքանչելի կերպով զուարթացնելու համար իրենց հոգին և իրենց զգայարանքները։

Այսպիսի է ահա այն փոփոխութիւնն որ կ՚ըլլայ ի Վենետիկ, ինչպէս նաև բովանդակ Իտալիոյ մէջ, հնգետասաներորդ և վեշտասաներորդ դարուց մէջտեղ։ Քիոճիոյ պատերազմն վերջին արտորուածն է դիւցազնական վաղեմի թատերախաղին․ հոն, հին հասարակապետութեանց իբրու ամենէն գեղեցիկ ժամանակին մէջ, կը տեսնուի պաշարուած ժողովուրդ մը՝ որ իւր զէնքը կ՚ազատէ բոլորովին անկարծելի և անյուսալի կերպով, արուեստաւորներ՝ որոնք նաւեր կը հայթայ-

թեն, յաղթական Պիզանի մը՝ որ բանտ կը մտնէ և անկէ ուրիշ բանի համար դուրս չելներ՝ բայց միայն յաղթանակը նորէն սկսելու համար, Կարոլոս Զենոն մը՝ [1] որ տակաւին կ'ապրի յետ քառասուն վէրքեր ընդունելու, եօթանասնամեայ դուքս մը, Կոնտարինի՝ որ կ'ուխտէ իւր նաւը բնաւ ձեռքէ չի թողուլ, մինչև որ թշնամւոյն նաւատորմիղը չի բռնուի, երեսուն ընտանիք ազնուականաց կարգէն, գեղավաճառք, համեմավաճառք, գինեվաճառք, մուշտակավաճառք, անձնանուիրութիւն մը, արիութիւն մը, հասարակաց ոգի մը՝ յար և նման Աթենացւոց՝ ի ժամանակս Թեմիստոկլեայ, և Հռովմայեցւոց՝ ի ժամանակս Փաբիոսի Կունկտատորի։ Եթէ այս վայրկենէս սկսեալ ներքին վառարանն կը պաղի, սակայն անոր տաքութիւնն կը զգացուի դեռ երկայն տարիներու ընթացքին մէջ, որ աւելի երկար ժամանակ տևեց այն տեղ՝ քան բոլոր Իտալիոյ միւս մասանց մէջ, որ և յանկարծական փայլմամբք կը ցուցընէ մերթ ընդ մերթ իւր զօրութիւնը։ Վենետիկ մինչ ան-

1. Վախճանեալ յամին 1418։ Իւր կեանքն՝ Պլուտարքեայ նկարագրած մարդկանց կենաց նման՝ կեանք մ'է։

կախ քաղաք մ'է, սիրելի հայրենիք մը. մինչդեռ Փլորենտիա, Հռովմ և Բոլոնիա լոկ Թանգարանք էին պարապորդաց և սիրողաց։ Ժողովուրդն հպատակ լինելով հանդերձ՝ միանգամայն քաղաքացի էր յարմար առթին. երբ Լուդովիկոս ԺԲ և Մաքսիմելիանոս տիրեցին ցամաք երկրին մէջ գտնուած վենետկեան գաւառներուն, գաւառացիք կ'ապստամբին յանուն սուրբ Մարկոսի, և կամաւոր զինուորք, ի հեծուկս դքսին, վերստին կը գրաւեն զՊատաւիոն։ Երբ Պաւղոս Ե քահանայապետն կ'ուզէ կատարել տալ իւր կամքը ի Վենետիկ, վենետկեան կղերն հայրենասէր կը հանդիսանայ և ժողովուրդն ծաղրածութեան աղաղակներով կը վռնտէ պապական[1] աբեղաները։ Երբ բովանդակ Իտալիոյ վրայ կը տարածուի եկեղեցական հաւատաքննութիւնը, վենետկեան ծերակոյտն գրել կու տայ Պաւղոս Սարպիի ընդդէմ Տրիտենդեան ժողովոյն, կրօնական թոյլտուութիւն կու տայ իւր երկրին մէջ նորադանդից, հայոց, մահմետականաց, հրէից, յունաց, կը թողու իրենց տաճարները, կը ձգէ որ հերետիկոսք թաղուին եկեղեցեաց

1. «Վենետկեցի ենք և ապա քրիստոնեայք»։

մէջ։ Աչնուականք անգամ՝ գիտեն միշտ կը֊ռուիլ։ Վեշտասաներորդ դարու ամբողջ ըն֊թացքին մէջ, մինչեւ եօթնեւտասներորդ դարն և աւելի եւս անդրագոյն, նաքա ի Դաղմատիա, ի Մոռէա և բոլանդակ Միջ֊երկրականին վրայ կը պաշտպանեն երկիրը յամառութեամբ ընդդէմ անհաւատից։ փա֊մագուստի պահականոցն միայն սոլով կ'առ֊նուի (1571), և իւր կառավարիչն Բրագա֊դինոյ, ողջ ողջ մորթը հանուելով, հին ժա֊մանակներու դիւցազներէն է։ Լեպանտոյի պատերազմին մէջ, քրիստոնեայ նաւա֊տորմղին կէսը միայն վենետկեան նաւերը կը կազմէին։ Այսպէս ամեն կողմէ, հետ֊զհետէ աստիճանաբար սկարանալով հան֊դերձ, վտանգն, ազդեցութիւնն, հայրենա֊սիրական զգացումն, համառօտ ըսել, այն ամենայն որ կը կազմէ կամ կը զօրացնէ հոգեկան մեծ կեանքը՝ կը գտնուի այս տեղ. մինչդեռ, բոլանդակ Թերակղզւոյն մէջ, օտար աշխարհակալութիւնն, կղերական հարստա֊հարութիւնն, հեշտասէր կամ ակադեմական անգործութիւնն կը յօժարեցնեն զմարդ դա֊տարկասուն և մեղկ բարուց, երգասիրու֊թեան նրբութեանց և շատխօսութեան նուա֊գաց։

Բայց եթէ մարդկային զօրութիւնն ընաւ ջլատուած չէ ի Վենետիկ, սակայն կը տեսնուի կամաց կամաց անոր թուլնալը։ Կառավարութիւնն՝ կասկածոտ բռնակալութեան փոխուելով, դուքս կ'անուանէ Մոկենիգոյ մը, անամօթ շահադէտ մը՝ որ օգուտ կը քաղէ հասարակաց տագնապէն, փոխանակ այն Կարոլոս Զենոնի որ ազատեց հայրենիքը, երկու տարի բանտի մէջ կը պահէ նա Զենոնը, ցամաք երկրի զօրքերը կը յանձնէ զօրավարաց, կ'ամփոփէ իշխանութիւնը երեք խուզարկուաց ձեռքը, կը քաջալերէ մատնիչները, գաղտնի սպանութիւններ կը կատարէ և կը հրամայէ ժողովրդեան որ իրենք զիրենք հաճոյից տան։ — Միւս կողմէն, շռայլութիւնն կը սկսի։ Յամին իբր 1400, տուներն «բոլորն ալ փոքրիկ էին». բայց կը գտնուէին Վենետկոյ մէջ հազար ազնուականք՝ չորս հազարէն մինչև եօթանասուն հազար դուկատ եկամուտ ունեցողներ, և երեք հազար դուկատք կը բաւէին պալատ մը գնելու համար։ Այնուհետև այլ եւս ձեռնարկութեանց և անձնանուիրութեան համար չէր գործածուեր այն մեծ հարստութիւնն, այլ փառաւորութեանց և պերճութեանց համար։ Յամին 1495, Կոմին զար-

մանալով մը կ՚ըսէր «Մեծ Ջրանցն, որ կարծեմ թէ աշխարհիս ամենէն գեղեցիկ փողոցն է, և ամենէն աւելի լաւագոյն տուներով զարդարուածն. տուներն շատ մեծ են, բարձր և ընտիր քարէ, — և ասոնք հարիւր տարիներէ ի վեր շինուած են։ Ամենուն ճակատներն ալ սպիտակ մարմարիոնէ են, որոնք կու գան Իստրիայէն հազար մղոն հեռաւորութեամբ. դարձեալ, յաճախ ճակատին վրայ կան պորփիւրի և օձաքարի խոշոր կտորներ. ներսը գտնեայ՝ ըստ մեծի մասին՝ ունին երկու սենեակ որք ոսկեզօծ առաստաղներ ունին, վառարաններու ճոխ դարաւանդակներ յղկած մարմարիոնէ, ոսկեզօծ անկողիններու տախտակներ և նկարուած ու ոսկեզօծ հողմարգելներ, և ներսը փառաւորապէս զարդարուած կահ կարասիքով»։ Երբ նա հասաւ, քսանեւհինգ մետաքսազգեստ և ծիրանազարդ ազնուական մարդիկ նորա առջեւն ելան. զինքը մտուցին բոսորագոյն մետաքսով ծածկուած նաւակի մը մէջ. «սա ամենէն աւելի յաղթական քաղաքն է նորա տեսածներէն»։ Վերջապէս, մինչդեռ վայելելու պէտքն կ՚առաւելու, ձեռնարկութեան ոգին կը նուազի. Կապի անցքըն, վեշտասաններորդ դարու սկիզբը, Լու-

սիտանիացւոց ձեռքը կ'անցունէ Ասիոյ վաճառականութիւնը. Միջերկրականի և Ատլանտեանի վրայ, Կարոլոս Եի դրամական միջոցներն միացած Թրքաց տպատակութեանց հետ, կը նուաճեն ծովային ահագին կարաւանները, զորս պետութիւնն ամեն տարի կը տանէր ու կը բերէր Աղեքսանդրիայէն մինչեւ ի Բրիւժ: Իսկ ճարտարութեան գալով, արուեստաւորք իրենց գաւառաց մէջ արգելուած, հսկողութեան ներքեւ ընկած և բանտուած, կը պայրին իրենց արուեստը կատարելագործելէ, և կը Թողուն որ իրենց օտարազգի մրցողք գերազանցեն քան զիրենք այն արուեստից մէջ և իրենք մատակարարեն բոլոր աշխարհի: Այսպէս, ամեն կողմանէ գործելու ընդունակութիւնն կը նուազի, և վայելից յօժարութիւնն կ'աճելու, առանց մին զմիւսն ամբողջապէս ջնջելու, այլ այն կերպով որ մին միւսին հետ խառնուելով, յառաջ գայ երկդիմի հոգւոյն այն դրութիւնն, որ է իբր բարեխառնութիւն մի, ոչ շատ խիստ և ոչ շատ Թոյլ, որով կը ծնանին արուեստք: Ցիրաւի, 1454էն մինչեւ 1572, ընդ մէջ հաստատութեան պետական խուզարկուաց և Լեպանտոյի պատերազմին, ընդ մէջ աւարտման ներքին

բռնակալութեան և վերջին արտաքին յաղթանակին, կ'երեւին վենետկեան նկարչութեան հրաշալի ձեռակերտք։ Յովհաննէս Բելլինի կը ծնանի 1426ին, Գիորգիոնէ կը վախճանի 1511ին, Տիտիանոս 1576ին, Պ. Վերոնացին 1571ին, Տինտորետտոյ 1594ին։ Հարիւր յիսուն տարուան միջոցին մէջ, պատերազմատէր քաղաքն, Միջերկրականի տիկինն, վաճառականութեան և ճարտարութեան գլխոյն՝ եղաւ զբօսավայր մը դիմակաւորաց և անհամեստ կանանց։

### Նախկին Նկարիչք. — Յովհաննէս Բելլինի. — Կարպակիոս։

Գեղարուեստից ակադեմիային մէջ կայ հաւաքածոյ մը ամենէն աւելի հին նկարչաց։ Մեծ պատկեր մը միաչափ բաժանմամբք, 1380ին նկարուած, բոլորովին անհարթ, կը ցուցընէ նկարչութեան սկզբնաւորութիւնը. Նոր արուեստն այս տեղ, ինչպէս նաև այլուր, բիւզանդական աւանդութիւններէն առեր է իրեն ծագումը։ Նա ուշ կ'երեւի, շատ աւելի ուշ քան կանխահաս և

ուշիմ Տոսկանիոյ մէջ։ Յիրաւի, ԺԴ դարու մէջ, կը հանդիպինք Սեմիտեկոլոյի մը, Գուարիէնտոյի մը, որք Պատուիոնի մէջ հիմնուած Գիոտտոյի դպրոցին աննշան աշակերտքն են, բայց նախկին ազգային նկարիչները գտնելու համար հարկ է երթալ մինչեւ հետեւեալ դարու կէսերը։ Այն ժամանակ Մուրանոյի մէջ կ'ապրէր արուեստաւորաց ընտանիք մը, Վիվարինիք։ Արդէն ամենէն աւելի հնոյն՝ Անտոն նկարչին գործոց մէջ կը տեսնուին վենետիկեան ճաշակի սկզբնատարերքն, ծերունեաց քանի մը խոշոր մօրուքներ և ճաղատ գլուխներ, թաթաւուած գոյներով վարդագոյն և կանաչի զարնող գեղեցիկ աստեղէնք, գիրուկ փոքրիկ հրեշտակներ, լեցուն այտերով Տիրամօր պատկերներ։ Իրմէն վերջը, իւր եղբայրն Բարթողիմէոս, անշուշտ Պատուիոնի դպրոցին մէջ սորված, վայրիկ մը նկարչութեան մէջ կ'երեւցնէ չոր քանդակը և ոսկրոտ դէմքերը. բայց թէ՛ իրեն և թէ այլոց ձեռագործաց մէջ արդէն կը նշմարուի ճոխ գոյներու ճաշակն։ Արուեստի այս նախասենեկէն դուրս ելնելով, մարդուս աչքերն տակաւին կը պահեն իրենց քով լի և բուռն զգացում մը, զոր նկարչութեան ուրիշ ա-

րուեստանոցք ի Սիենա և ի Փլորենտիա, չեն տար, և եթէ շարունակուի այն, կը գտնենք մի և նոյն զգացումը, դեռ աւելի ճոխ, այս խանդարուած ժամանակիս վարպետաց առջեւ, որք են՝ Յովհաննէս Բելլինի և Կարպակիոս։

Աբեղայից եկեղեցւոյն մէջ Յովհաննէս Բելլինիի նկար մը տեսայ, որ Պերուճինեայ պատկերին պէս, հրաշակերտ մը կը թուի ինձ ճշմարիտ կրօնական արուեստի։ Մատրան մը խորը, խորանին վրայ, ոսկեղէն փոքրիկ ճարտարապետութեան մը մէջ, սուրբ Կոյսն մեծ կապտագոյն կրկնոցի մը մէջ ամփոփուած բազմեր է գահի մը վրայ։ Հեզ և անկեղծ գեղջուհւոյ մը պէս նա բարի է և պարզ։ Իւր ոտից քով կարճ զգեստով երկու փոքրիկ հրեշտակներ եկեղեցւոյ դպիրք կը թուին, և իրենց գիրուկ և մանկական ազդըրներն առողջ մարմնոյ ամենէն գեղեցիկ գոյնն ունին։ Երկու կողմերը, խորշերուն մէջ, կան երկու զոյգ սուրբեր, անշարժ անձինք, կրօնաւորի և եպիսկոպոսի զգեստով, միշտ ոտքի վրայ կանգուն կեցած՝ նուիրական դիրքով, որոնք իրական դէմքեր են և կը յիշեցնեն Ադրիական ծովու պղնձագոյն ձկնորսները։ Բոլոր այս դէմքերն ժամանա-

կաւ ապրեր են. հաւատացեալն որ ծունր կը դնէր նոցա առջեւ, կը նշմարէր հոն այն դիմագծերը զորս տեսեր էր իրեն շուրջը, իւր նաւակին և փողոցներուն մէջ, ծովային հողմով չորցած դէմքերու կարմիր և թուխ գոյնը, խոնաւ օդոյ մէջ մեծցած դեռահասակ աղջըկանց թանձր կենդանի մարմինը, ղամասկեան կտաւէ շուրջառը՝ բարձր աստիճան եկեղեցականին որ գլուխ կը կենար թափօրներու, փոքրիկ մերկ սրունքներն մանկանց՝ որք իրիկունը խնչեփաններ կ'օրօրային: Նա չէր կարող չհաւատալ անոնց. այսպիսի տեղական և այսպիսի կատարեալ ճշմարտութիւն մը զինքն ի ցնորս կ'առաջնորդէր: Մակայն գերագոյն և փառաւոր աշխարհի երեւոյթն էր այս: Այս անձնաւորութիւնք բնաւ չեն շարժիր, երազի մէջ տեսնուած կերպարանաց նման իրենց դէմքերն խաղաղ և աչքերնին սեւեռած են: Նկարուած որմախորշ մը, ոսկւով և կարմրով բանուած, դէպ ի խոր կ'երթայ սուրբ կուսին ետեւը՝ ինչպէս երեւակայեալ արքայութեան երկայնում մը. այս կերպով այլաբանական ճարտարապետութիւնն կը կատարելագործէ իրական ճարտարապետութիւնը, և մարմարիոնի վրայ ոսկեղինիկ սուրբ հաղորդութեան խորհուրդն,

պատկերալ ճառագայթիւք և փառօք, է մուտ-
քըն գերընական աշխարհին՝ որ կէս մը կը
բացուի անոր ետեւի կողմը։

Եթէ դիտուին Ակադեմիոյ մէջ գտնուող Յովհաննէս Բելլինիի և իւր ժամանակակցաց ուրիշ պատկերներն, պիտի տեսնուի որ վենետկեան նկարչութիւնն, բոլորովին իրեն յատուկ շաւղի մը հետեւելով, մի և նոյն չափով և կերպով յառաջ կ'երթայ, ինչպէս որ բովանդակ Իտալիոյ մէջ։ Նա ինչպէս հոս, նոյնպէս և այլուր, դուրս կ'ելնէ պատարագամատոյցէն և միւսիոնէն, և կը համապատասխանէ ի սկզբան ամենայն քրիստոնէական զգացմանց. յետոյ, աստիճանաբար, մարմնաւոր գեղեցիկ կենաց զգացումն մտուց խորանի շրջանակաց մէջ կորովի և առողջ մարմիններ, որոնք փոխ առնուած էին շրջակայ բնութենէն. և զարմացմամբ կը տեսնուին անշարժ արտայայտութիւնք և կրօնական դիմագծեր որք կը տեւեն կայտառ կերպարանաց վրայ, յորս կը շրջի երիտասարդական արիւն մը և զոր կը պահէ անարատ խառնուած մը։ Կրկին ոգիներու և կրկին ժամանակաց խառնուրդն է այս, մին քրիստոնեայ՝ որ կը ջնջուի, միւսն հեթանոս՝ որ կը հաստատուի իւր ազդեցութեան մէջ։ Բայց

այս ընդհանուր նմանութեանց վրայ կը ծըրագրուին Վենետիկոյ մէջ որոշիչ գծեր։ Անձնաւորութիւնք կ'ընդօրինակուին գրեթէ կենդանւոյն կամ իրականին վրայէն, նուազ այլափոխուելով դասական կամ խորհրդական զգացումէն, նուազ յստակք քան ի Պերուսիա, նուազ ազնուական քան ի Փլորենտիա. Նոքա ո՛չ այնքան մտաց և սրտի հետ կը խօսին՝ որքան զգայարանաց։ Նոքա աւելի շուտով կը ճանչցուին թէ մարդիկ են և աւելի հաճոյք կ'ազդեն աչաց։ Սաստիկ և կենդանի գոյներ կը գունաւորեն իրենց մկանքները և իրենց դէմքը. փոքրիկ մանկանց ուսոց և ազդրներուն վրայի կենդանի միսն արդէն կակուղ է. պայծառ դաշտանկարք կ'ընկղմին շատ խորը՝ դուրս ցատքեցնելու համար անձնաւորութեանց թանձր գոյնը. սուրբերն կարգաւ շարուած են սուրբ Կուսին չորս կողմը այլեւայլ դիրքերով, զորս չէին գիտեր ուրիշ նախնական դպրոցաց միաձեւ թափօրքն։ Զանազանութիւն և հաճոյք սիրող ազգային ոգին, իւր եռանդեան և հաւատոց սաստկութեան մէջ, կ'երեւցնէ ժպիտ մը։ Այս նկատմամբ չկայ բան մը որ այնչափ աչքի զարնէ, ինչպէս Կարպաչիոսի շինած

ուլթ նկարքն սրբուհւոյն Ուրսուլայի[1]. ամե-
նայն ինչ կայ հոն, և նախ և առաջ աւա-
տական պատկերավաճառի անյաջողութիւնն։
Նա չի գիտեր դաշտանկարի կէսը և մեր-
կութիւնը. իւր ծառերով շրջապատուած քա-
րաժայռերն սաղմոսարանէ մը դուրս ելած
կը թուին. շատ անգամ իւր ծառերն երկա-
թեայ թիթեղի ձեւով ջրդեղուած և կտըր-
տուած են. լերան մը վրայ խաչուած իւր
տասն հազար մարտիրոսքն՝ հին խորհրդոյ մը
դէմքերուն նման այլանդակք են. կը տես-
նուի թէ նա Փլորենտիոյ մէջ չէ ապրած,
և բնական առարկայքը չէ ուսումնասիրած
Պաւղոս Ուչելլոյի հետ, ինչպէս նաև մարդ-
կային անդամները և մկանքը՝ Պոլլայիոլոյի
հետ։ Միւս կողմանէ, նորա նկարուց մէջ
կը տեսնուին այն միջնադարեան ամենէն
աւելի համեստ կերպարանքներն և չափա-
զանց կատարելութիւնը, այն կատարեալ ան-
կեղծութիւնը, քրիստոնէական գիտակցու-
թեան այն ծաղիկն, զոր հետագայ դարն՝
աւելի զգայասէր և աւելի անհարթ՝ կը կոխ-
կրտէ իւր բուռն յուզմանց մէջ։ Սրբուհին
և իւր նշանուածն, իրենց վայրահակ չէկ

1. Պատկերք յամէ 1490 մինչեւ ցամն 1515։

երկայն մազերուն ներքեւ, տռատպելայօք դրոյցներու անձնաւորութեանց նման լուրջ և արտաշարժ են։ Կը տեսնուի նա մերթ նիրհած՝ որ իւր մարտիրոսութեան աւետիսը կ՚ընդունի հրեշտակէն, մերթ իւր ամուսնոյն հետ ծունր դրած քահանայապետին օրհնութիւնը ընդունելու համար, մերթ յափշտակուած ի փառս՝ գլուխներու հոծ և թանձր հունձքի մը վերեւ։ Ուրիշ պատկերի մը մէջ, կ՚երեւի նա սրբուհի Աննայի և երկու ծերունի սրբոց հետ ի միասին՝ որք կը գրկեն զիրար. անկարելի է երեւակայել աւելի բարեպարիշտ և հեզուկ կերպարանքներ. Նա՝ տժգոյն և անոյշ՝ գլուխը քիչ մը խոնարհած, իւր սիրուն ձեռացը մէջ բռներ է դրօշակ մը և դալար արմաւենւոյ ճիւղ մը։ Իւր մետաքսեայ մազերն կը սահին կ՚իջնեն իւր երկայն պարեգօտին կուսական կապուտակին վրայ, արքայական կրկնոց մը կը քօղարկէ զինքը իւր ոսկեզօծ երփներանգներով. ստուգիւ սրբուհի մ՚է սա, և միջնադարեան պարզութիւնն, խոնարհութիւնն և փափկութիւնն կը փայլին իւր շարժուածքին և նայուածքին մէջ։ Ահաւասիկ այսչափ ինչ դարուն և երկրի մասին։ Այս նկարներն տեսարաններ են հետաքրքրական սովորութից և ճոխ զար-

դարանքներ։ Արուեստաւորն, ինչպէս աւելի վերջը իւր հռչակաւոր յաջորդքն, ի ցոյց կը դնէ պատկերին մէջ ճարտարապետութիւններ, շէնքեր, կամարներ, ասղնագործ պատուանդանե-րով զարդարուած սրահներ, նաւեր, ժապա-ւինազարդ և փայլփլուն պարեգօտներ, հա-գուած անձանց թափօրներ, այս ամենը փոք-րիկ համեմատութեամբք. սակայն սոցա շը-քեղութիւնն և զանազանութիւնն գուշակել կու տան ապագայ ձեռագործները, ինչպէս որ գունաւորութիւնն գուշակել կու տայ պատ-կեր մը։ Եւ կատարուող կերպարանափոխու-թիւնը ցուցնելու համար, նոյն իսկ ինքն անգամ մը կատարեալ նկարչութեան սահ-մանին մէջ կը մտնէ. կը տեսնենք զինքը որ իւր նախկին ցամաքութենէն դուրս կ՚ելնէ և ճրաշլիչ և նոր ոճ մը կ՚առնու։ Մեծ սը-րահին մէջտեղը կայ Ընծայումն Յիսուս մանկան որ բնաւ իրենը պիտի չկարծուէր, եթէ իւր ձեռքով նշանակուած չըլլար վրան (1510)։ Ոսկեայ միւսիոններով դրուագուած մարմարիոնէ կամարակապ սրահի մը ներքեւ կը տեսնուին գրեթէ բնականին չափ խոշոր անձինքներ, կատարեալ քանդակով, գերա-զանց կատարելութեամբ, անթերի յօրինուա-ծով մը, ստուերի և լուսոյ ամենէն գեղե-

ցիկ ստախճանաքար նաւազմանց մէջ. սուրբ Կոյսն, երկու դեռահասակ կանանց ընկերակցութեամբ, կը տանի իւր որդին առ ծերունին Սիմէոնին. ստորեւ երկայն մազերով երեք հրեշտակներ ջութակով և վինով կը նուագեն: Մարդկանց գլուխներուն և քանի մը ստուերղինաց ծալքերուն մէջ եղած փոքր ինչ անհարթութենէն դուրս, հին ոճն անհետացած է. անկէ ուրիշ բան մնացած չէ բայց միայն չափազանց սիրունութիւն մը փափկութեան և բարոյական քաղցրութեան, և առաջին անգամ փոքրիկ մանկանց կիսամերկ մարմինն կը ցուցընէ լուսով թափանցուած և տոգորուած մարմնոյ գեղեցկութիւնը: Այս պատկերով մեծ նկարչութեան սեմը արդէն անցուեր է, և Կարպակիոսի շուրջը, իրեն երիտասարդ ժամանակակիցքն, Գիորգիոնէ և Տիտիանոս, աւելի յառաջ մղեր են զայն:

Վենետիկեան աշխարհն ԺԶ դարուն մէջ. — Պատրըկական գոռոզութիւնն. — Ազատ ախորժն. — Արեւոինի առանին կեանքն — Արուեստի զգացումն. — Գունաւորիչ բըն-ազդմունքն ։

Նկարչութեան ծաղկած միջավայրը իմանալու համար, երբ փորձուի՝ ըստ յիշատակարանաց՝ մտաց առջեւ բերել Վենետիկոյ մէջ պատրըկի մը կեանքը վեշտասաներորդ դարու առաջին կիսուն, նախ և առաջ կը տեսնուի 'ի նմա, և քան ամեն բան աւելի, գոռոզութեան ապահովութիւնը և մեծութիւնը։ Նա ինքզինքը հին Հռովմայեցւոց յաջորդը կը համարի, և կը պնդէ, թէ ի բաց առեալ աշխարհակալութիւնքը, նա զանոնք գերազանցած է և դեռ կը գերազանցէ[1]։ « Հռովմէական ազնուապետութեան բովանդակ նահանգաց մէջ՝ իտալիան պչխոյ է », իսկ կեսարներու ձեռօք նուաճուած և բարբարոսաց ձեռօք աւերուած իտալիոյ մէջ,

1. Դոնատոյ Ցանոտտի, Վենետիկոյ Հասարակապետութեան (Տրամախօսութիւնք)։

վենետիկ է միայն ազատ մնացած քաղաքն ։ Դուրսը, նա վերստին ձեռք կը բերէ Լուդուիկոս ԺԲի իրմէն խլած ցամաքային նահանգները ։ Իւր լճակքն և դաշնակցութիւնք կը պաշտպանեն զինքը կայսեր դէմ ։ Թուրքն բնաւ կարող չի լինիր իւր իշխանութեան դպչելու, իսկ Կրետէ, Կիպրոս, Կիկլադայք, Կորկիւրա, Ադրիականի ծովեզերեայք, իւր պահակապաններով պաշարուած, մինչեւ ծովուն ծայրը կը տարածեն իւր գերիշխանութիւնը ։ Ներսը, « քան զայն աւելի կատարեալ բնաւ չէր եղած նա »։ Աշխարհի ո՛չ մի պետութեան մէջ չեն տեսնուիր « աւելի լաւագոյն օրէնքներ, աւելի ապահով հանդարտութիւն մը, աւելի ամբողջական միաձայնութիւն մը », և այս գեղեցիկ կարգաւորութեան մէջ որ միակն է տիեզերաց մէջ, « իրեն բնաւ չեն պակսիր քաջասիրտ և մեծահոգի անձինք »։ Մեծ տիրոջ մը գոռոզ անզգուշութեամբ, Մարկոս Տրիփոն Գաբրիէլլոյ կը համարի, թէ պանծալի քաղաքն իւր յաջողութիւնը պարտական է իւր ազնուապետական կառավարութեան, և « թէ խորհրդարանի փակումն զինքը այնպիսի մեծութեան մը հասուց՝ որուն բնաւ հասած չէր առաջ »։ Ըստ իրեն, քուէ չունեցող քաղաքացիքն՝

միայն աննշան մարդիկներ էին, նաւավարք, հպատակք, ծառայք։ իսկ ոմանք եթէ ապագայի մէջ հարուստ և մեծ եղած են, պետութեան թոյլտուութեամբ եղեր է, որ զանոնք իւր պաշտպանութեան ներքեւ առեր է. այժմ իսկ նոքա պաշտպանեալք են, իրենք իրաւունք չունին. պաշտպանեալք և սոսկականք, նոքա շատ երջանիկ են իրենց շնորհուած հովանաւորութեամբ։ Մի միայն օրինաւոր տէարքն « են երեք հազար ազնուական մարդիկք, տէարք քաղաքին և բովանդակ պետութեան ցամաքի և ծովու վրայ »։ Պետութիւնն իրենց կը վերաբերի. ինչպէս երբեմն Հռովմայ պատրիկներն, սոքա տէարք են տէրութեան, և իրենց վարչութեան իմաստութիւնն կը հաստատէ իրենց իրաւանց ամրութիւնը։ Քիչ վերջը, պերճասէրն կը նկարագրէ, հայրենասիրական հաճոյքով մը, սահմանադրութեան տնտեսութիւնը և քաղաքին դրամական մուտքերը, իշխանութեանց կարգը և ատենակալաց ընտրութիւնը, հասարակաց եկամտին մէկուկէս միլիոն սկուդները, ցամաք երկրի նորանոր ամրոցները և զինարանի զէնքերը։ իւր լըրջութեամբ, իւր վեհանձնութեամբ, իւր խօսքի ազնուութեամբ իբրեւ հին քաղաքացի

մը կը համարուի նա։ Յիրաւի, իւր բարեկամներն զինքը կը համեմատեն Ատտիկոսի հետ. սակայն նա քաղաքավարութեամբ կը մերժէ այս անունը և կը յայտարարէ, թէ որչափ որ Ատտիկոսի պէս հրաժարեցաւ ինքն գործերէն, այլ այս բանս տարբեր շարժառիթով մ'եղաւ, բոլորովին պատուաւոր առ իւր քաղաքն. վասն զի Ատտիկոսի հրաժարիլն բարի քաղաքացեաց անկարողութեան և Հռովմայ անկման պատճառաւ եղաւ, մինչդեռ իրենին պատճառն է բազմութիւն կարող մարդկանց և յաջողութիւնն վենետկոյ։ Այսպէս խօսակցութիւնն կը շարունակուի ազնուական քաղաքավարութեամբք, գեղեցիկ դարձուածներով և հաստատուն պատճառաբանութեամբք. իբրեւ թատրոն կը ծառայէ Պատաւիոնի մէջ Բեմբոյի դաստիկոնն, և ընթերցողն կ'երեւակայէ վերածնութեան այդ բարձր սրահները, զարդարուած կիսանդրիներով, ձեռագիրներով և անօթներով, ուր նորէն կը գտնուէին հին հեթանոսութեան և հայրենասիրութեան մեծութիւնքն, կիկերոնեան ճարտասանութեան, արուեստակեալ յստակաբանութեան և քաղաքավարութեան հետ։

Ի՞նչպէս կը զուարճանան մեր պերճասէրքն։ Անոնց մէջ լուրջեր կը գտնուին, ես կ'ուզեմ

հաստատալ․ բայց Վենետկոյ մէջ ապրելու եղանակն շատ անաշտու չէ։ Այս միջոցիս մէջ, ամենէն աւելի աչքի զարնող անձն է Արետինն, բողի որդի մը, անկելանոցի մէջ ծնած, արուեստին հացկատակ և ուսուցչապետ արծաթաքաղութեան, որ զրպարտութեամբք և շողոքորթութեամբք, անամօթ նըւագներով և անհամեստ խօսակցութեամբք, աշխարհահռչակ կը հանդիսանայ ամեն տեղ, եօթանասուն հազար սկուդ կը շորթէ իշխաններէն, ինքզինքը կ'անուանէ «պատիժ իշխանաց», և իւր ուռուցիկ և թոյլ ոճը՝ մարդկային հոգւոյ հրաշալիքներէն միոյն տեղ անցընել կու տայ։ Նա բան մը չունի, և փառաւորապէս կ'ապրի իրեն տրուած արծաթով կամ իրեն առատաձեռնուած պարգեւներով։ Առաւօտէն սկսեալ, Մեծ Ջրանցի վրայ գտնուող իւր պալատան մէջ, թախանձողք և շողոքորթք կը լնուն նախասենեակը։ «Այնքան տեարք[1], կ'ըսէ նա, շարունակ գլուխս կը յոգնեցնեն իրենց այցելութեամբք, որոց ոտից շփմամբ մաշած են իմ սանդուխներս, ինչպէս Կապի-

1. Նամականի, հատոր Ա, էջ 206։ Եկաւ ի Վենետիկ յամին 1527։

տօլիոնի քարայատակն յաղթական կառաց անիւներով։ Ջեմ կարծեր, թէ Հռոմ տեսած ըլլայ ազգաց և լեզուաց այսպիսի մեծ խառնուրդ մը, որ կը տեսնուի իմ տանս մէջ։ Իմ տունս կու գան Թուրքեր, Հրեայք, Հնդկաստանցիք, Գաղղիացիք, Սպանիացիք, Գերմանացիք. իսկ Իտալացւոց գալով կրնաք ենթադրել թէ ո՛րքան կարելի են ըլլալ. Հասարակ ժողովրդեան վրայօք խօսք անգամ չեմ ըներ. անկարելի է գիս տեսնել առանց կրօնաւորաց և քահանայից՝ որոնք միշտ իմ չորս կողմս են, ... ես աշխարհի քարտուղարն եմ»։ Մեծամեծք, բարձրաստիճան եկեղեցականք, արուեստաւորք զինքը կը մեծարեն. իրեն կը բերեն հին դրամներ, ոսկեղէն մանեակներ, Թաւշեայ վերարկու մը, պատկեր մը, հինգ հարիւր ոսկւոյի քսակներ, ակադեմիոյ վկայագիրներ։ Սպիտակ մարմարիոնէ իւր կիսանդրին, Տիտիանոսի ձեռօք շինուած իւր կենդանագիրն, ոսկեայ, անագապղնձէ և արծաթէ մետալներն՝ որոնք զինքը կը ներկայացնեն, այցելուաց աչաց առջեւ կը դնեն իւր լիրբ և անասնական դիմակը։ Հոն կը տեսնուի նա պատկազարդ, զգեցած կայսերական երկայն պարեգօտը և բազմած բարձր գահի մը վրայ՝ կ՚ընդունի ժողովրդոց մեծարանքը և

ընծայքը ։ Նա ժողովրդական է և հետամուտ նորաձևութեան ։ « Ես կը տեսնեմ, կ՚ըսէ նա , իմ՝ կենդանագիրս պալատներու ճակատուց վրայ . կը գտնեմ զայն սանտրներու տուփերուն վրայ , հայելիներու զարդարանաց վրայ , հին խեցեղէն սկաւառակներու վրայ , ինչպէս Աղեքսանդրի , Կեսարու և Սկիպիոնի կենդանագիրներն ։ Դարձեալ , պէտք էք գիտնալ թէ Մուրանոյի մէջ բիւրեղեայ անօթի տեսակ մ՚ալ կը կոչուի Արետինէ ։ Ձիերու տեսակ մը կը կոչուի Արետին , ի յիշատակ ձիու մը՝ զոր ես ընդունեցայ Կղեմէս քահանայապետէն և ընծայեցի փրեղերիկ դքսին ։ Մեծ Ջրանցի վրայ իմ՝ բնակած տանս կողերէն մին թրջող առուակն եւս Արետինի անունը կը կրէ ։ Կ՚ըսուի Արետինեան ոճ , որոյ վրայօք թո՛ղ ճաթին իմաստակք դժկամակութենէն ։ Իմ սենեկապան կամ տան մէջ ծառայող կիներէն երեքն , որոնք զիս թողուցին տիկին ըլլալու համար, կոչուեցան նոյնպէս Արետինք » ։ Այսպէս հասարակաց թեւարկութեամբ պաշտպանուած և սնած , նա կը վայելէ , ոչ թէ զգուշութեամբ և զաղտնապէս , այլ խստիւ և համարձակ ։ « Մսխենք , ապրինք , խմենք զուլ զուլ , և ... իբրեւ ազատ մարդիկներ » ։ —

«Ես ազատ մարդ մ'եմ», կ'ըսէ նա ստէպ. այս բանս կը նշանակէ, թէ նա ինչ որ կ'ուզէ կ'ընէ և բոլոր իւր զգայարանաց ճարակ կու տայ: Այս ժամանակիս մէջ, ջղերն դեռ կոշտ են և մկանքն զօրաւոր. Եօթնեւտասներորդ դարու վերջն սովորոյթք պիտի փոխուին ցրտութեան կամ արուեստակութեան: Այս միջոցիս մէջ, մոլեկան ցանկութիւնք աւելի անյագք են քան թէ փափուկք. Աստղիկն՝ զոր մեծամեծ նկարիչք մերկամարմին կը ներկայացնեն կտաւներու վրայ՝ այրական իրան մ'ունի և հաստատուն նայուածք մը. հեշտութիւնն, սաստիկ և համարձակ, բնաւ տեղի չի տար փափկութեան և նրբութեան: Արետին եղած է թափառական և զինուոր, և իւր հաճոյքներն զայդ կը զգան: Մեծ հացկերոյթ կ'ընեն անոր տունը. «քսանուերկու կանայք կան իւր տան մէջ, երբեմն իրենց փոքրիկ կաթնկեր տղոցմով ի միասին»: Կերուխումն և անկարգութիւնն անընդհատ են հոն: Վեհանձն է նա իբրեւ գող, և եթէ նա կ'առնու, կը թողու եւս որ առնուն: «Կրկնապատկեցէք ինձ իմ թոշակս[1] հինգ հարիւր սկուդ. երբ ես

1. Թուղթ առ տէր Լոդ Սորխայի, 1562, հա. Բ, էջ 258:

ասկէ հազար անգամ ալ աւելի ունենամ, նեղութեան մէջ պիտի ըլլամ։ Ամենքն առ իս կու գան, իբր թէ ես ըլլայի արքունի գանձու տէրն։ Եթէ աղքատ աղջիկ մը ծնանի, իմ տունս ծախք կ՚ընէ։ Եթէ մէկն բանտ դրուի, ես կը հոգամ իւր՝ ամեն բանը։ Առանց հանգերձանաց զինուորք, դժբախտ օտարականք, բազմութիւն մը թափառաշրջիկ ասպետաց կու գան իմ տանս մէջ հանգիստ առնելու։ Երկու ամիս չկայ, երիտասարդ մը վիրաւորուած ըլլալով իմ շրջակայիցս մէջ, իմ սենեակներէս միոյն մէջ բերուեցաւ»։ Իւր ծառայք զինքը կը կողոպտեն։ Ամենայն ինչ խառնափնդոր է այս բաց տան մէջ, անօթք, կիսանդրիք, նախագիծք, շարփուշք և վերարկուք՝ որոնք իրեն կ՚ընծայուին, Կիպրոսի գինիներ, թզաքաղք, այծեմունք և նապաստակք՝ զորս իրեն կը ղրկեն, սեխք և խաղողք զորս նա ինքն կը գնէ երեկոյեան հացկերոյթի համար։ Նա աղէկ կ՚ուտէ, լաւ կը խմէ, և իւր մարմարեայ սրահը կը թնդացնէ իւր զուարթ աղաղակներովը։ Կաքաւները կը հասնին. որոնք « իսկոյն բըռնուած, և իսկոյն կը խորովուին. ես թողուցի իմ երգս ի պատիւ նապաստակաց և սկսայ երգել թռչնոց գովութիւնքը։ Իմ աղ-

նիւ բարեկամն Տիտիանոս, ակնարկ մը տալով այս ախորժահամ կենդանեաց, ակսաւ ինծի հետ ի միասին երգել երկձայն Մեծացուցէ երգը զոր ես սկսեր էի »։ Ծամելեաց այս երաժշտութեան հետ կը միանայ միւսն ։ Հռչակաւոր երգչուհին Փրանկիսկինա իւր հիւրերէն մին է..... « Ես կ'ուզեմ, կ'ըսէ նա, թէ այն տեղ ուր որ կը պակսի իմ պնակներուս համն լծո՛ղ երեւին հոն քու երաժշտութեանդ քաղցրութիւնքն »։ Անհամեստ կանայքն անոնց քովն են հոս ։ Նա գրքեր գրեց իրենց գործածութեան համար և անոնց ուսոյց իրենց արուեստին[1] կատարելագործութիւնները ։ Նա զանոնք կ'ընդունի, զանոնք կը փայփայէ, իրենց կը գրէ, և զանոնք մէկտեղ կը ժողվէ ։ Առաւօտը, իւր այցելուները շուտով մը ճամբելէն վերջը, երբոր սթափելու համար Սանսովինոյի և Տիտիանոսի արուեստանոցը չերթար, այն ժամանակ կ'ելնէ նա գործաւոր աղջկանց քով, անոնց « քանի մը դրամ » կու տայ, և նոյնպէս անոնց կարել կու տայ « թաշկինակներ, չուխաներ, շապիկներ, օրական հացը շահեցը-

1. Ռագիոնամենթի. — Թուղթք առ Զուփո-լինա և առ Զափետտա ։

նելու համար անոնց »։ Այս արուեստին համար, նա իւր քով առաւ և պաշտօնի վրայ դրաւ վեց գեղահասակ կանայք, որոնք կը կոչուին Արետինք, կանանոց առանց փականաց, ուր փախուստք, կռիւք, խառնակութիւնք անհագին աղմուկ մը կը հանեն։ Երեսուն տարի ապրեցաւ նա այսպէս, երբեմն գաւազանով ծեծուած, այլ միշտ թոշակ սահմանուած իրեն, ընտանի ամենէն աւելի մեծամեծաց, ընդունելով եպիսկոպոսէ մը մութ կապոյտ կօշիկներ իւր տիկնանց համար, ընկեր Տիտիանոսի, Տինտորետտոյի և Սանսովինոյի։ Դեռ աւելին կայ. Արետին դպրոց կը շինէ, նա ունի իւր նմանողները՝ նոյնպէս իրեն պէս հացկատակ և զազրախօս, Դոնի, Դոլչէ, Նիկողայոս Փրանկոյ իւր քարտուղարն և իւր թշնամին, հեղինակ Պրիապեան երգոց, որ և կախաղանաւ մեռաւ ի Հռոմ։ Այսպէս ծաղկեցաւ ի վենետիկ խեղկատակութեանց և անառակութեանց մատենագրութիւն մը, որ Պարաբոսկոյի փաղաքշական խօսքերով չափաւորուած, նորէն երեւան պիտի գայ Բաֆֆոյի նուագաց հետ։ Դատեցէք ընթերցողները գրքէն, և հիւրերը բնակարանէն։ Այս հարեւանցի տեսութեամբ կը տեսնուի կէս մը մարդկանց ներքին բնադրոշմը, որով նկարիչք

առ մեզ հասուցին զգալի դէմքը, և հոն խառն կ'երևին գլխաւոր գծագրութիւնք՝ որք կ'արտայայտեն ժամանակակից արուեստը, ամբարտաւան մեծութիւնը՝ որ կը փայլէ այսպիսի հասարակապետութեան մը ընդունելի եղած տեարց, անասնական և բեղմնաւոր ազգութիւնն որ երկարակեաց եղաւ այրական գործովն, պերճասէր և անամօթ զգայասիրութիւնն, որ պէսպէս հարստութեամբ և ոսոշիչ ապահովութեամբ աճեցած, ինքզինքը ի ցոյց կը դնէ և կը փայլէ երկնքի բոլոր պայծառութիւնը։

Կէտ մը կը մնայ, այն իսկ է արուեստի զգացումն։ Զայս կը գտնես ամեն տեղ ի Վենետիկ այն ժամանակին մէջ, առ առանձնականս, պետական մեծամեծ ընկերութեանց մէջ, միջնակարգ մարդկանց քով, մինչև իսկ այն կոշտ և պարզ բնաւորութեանց մէջ, որոնք Արետինի պէս, ուրիշ բանի համար ծնած չեն թուիր, բայց եթէ ուրախութեան խնջոյք ընելու և ուրիշը կթելու համար։ Ներքին ազնուականութենէն ինչ որ կը մնայ իրենց՝ այս կողմանէ յերևան կ'ելնէ։ Իրենց անամօթութիւնն և իրենց համարձակութիւնն դիւրաւ կը յարմարին լրբութեան և բռնութեան գեղեցկացած պատկերին հետ.

նոքա իրենց կորովի և համարձակ բնազդմանց յարմար սնունդ մը կը գտնեն մկնեղ հսկայից մէջ, յորդառատ մերկ գեղեցկութեանց մէջ, նկարներու ճարտարապետական և շռայլ շքեղութեան մէջ։ Բարոյական նուաստութիւնն չի մերժեց բնաւ զգայական փափկութիւնը. ընդհակառակն, նա անոր ազատ ասպարէզ մը բացաւ, և մարդն մի կողմէն միայն ամբողջովին խոնարհած աւելի յարմար եղաւ իր հաճոյից երփներանգները բաժնելու։ Արետին մեծարանօք կը խոնարհի Միքայէլ Անգեղոսի առջեւ. նա իրմէն ուրիշ բան չի խնդրեր, բայց միայն իր ուրուագրերէն մին «իր կենաց մէջ անով զուարճանալու համար և իր հետ զայն գերեզման իջեցնելու»։ Տիտիանոսի հետ նա լաւ բարեկամ է, բնական և պարզ. իր զարմանքն և իր ճաշակն անկեղծք են։ Գոյնի վրայ կը խօսի նա նոյն իսկ Տիտիանոսի արժանի ճշգութեամբ և ազգու կենդանութեամբ մը։ «Տէր, կ'ըսէ նա անոր[1], սիրելի գործակից, իմ սովորութեանս հակառակ,

1. Գիրք Գ. էջ 49։ Տես Պ. Շաալի գեղեցիկ ուսումնասիրութիւն մը Արետինի վրայ, Ուսումնասիրութեան Վերածնութեան դարու վրայ։

այսօր ես մինակ ճաշեցի կամ մանաւանդ ընկերութեամբ նեղութեանց այս չորեքօրեայ ջերմի՝ որ չի թողուր ինձ ոչ մի կերակուրի համն առնուլ. սեղանէն ելայ, կշտացած յուսահատ ձանձրութենէն՝ որով հոն նստեր էի. յետոյ, թեւս դնելով պատուհանի պը-սակի սկաւառակին վրայ, և թողլով որ դէպ ի վեր երթայ կուրծքս և գրեթէ բովանդակ մնացած մասը իմ անձինս, սկսայ դիտել ան-թիւ նաւակներու հրաշալի տեսարանը, որոնք օտարականներով և վենետիկեցիներով լե-ցուած, կը զուարթացնեն ոչ միայն ընթե-րակայքը, այլ նաև Մեծ Ջրանցքը... Ցան-կարծ, ահա երկու գոնդոլք՝ զորս կը թիա-վարէին անուանի նաւավարք՝ արագութեամբ իրարու հետ կը մրցին, և հասարակութեան զբօսանք մը կը կազմեն։ Ես ալ շատ հա-ճոյք զգացի դիտելով բազմութիւնը՝ որ այս զուարճութիւնը տեսնելու համար կեցեր էր Ռիալտոյի կամրըջին վրայ, կամերլինգներու ծովեզերաց վրայ, ի Ջկնարանն, յանցս Ս. Սոփիայի և Տանն Մոստոյի։ Եւ մինչդեռ երկու կողմերէն ամբոխն կ՚երթար իւրաքան-չիւրն իւր ճամբով ուրախալից ծափահարու-թեամբք, ես աչքերս երկինք կը դարձնեմ՝ ինքն իրեն անհանգիստ մարդու մը պէս, որ

չի գիտեր ի՛նչ ընէ իւր միտքը և իւր մտածութիւնքը։ Այս երկինքն Աստուծմէ ստեղծուելէն հետէ՝ բնաւ գեղեցկացած չէր ստուերաց և լուսոյ այսպիսի՛ սիրուն նկարչութեամբ մը։ Օդն այնպիսի էր, որպիսի կ՚ուզէին որ ըլլայ նախանձորդքն Տիտիանոսի... վասնզի նոքա չեն կարող Տիտիանոս լինել... Նախ և առաջ շէնքերն, որոնք՝ ստոյգ քարէ ըլլալով հանդերձ, դարձեալ արուեստաւորի ձեռօք այլակերպուած նիւթ մը կ՚երեւէին, յետոյ լոյսն՝ որ ինչ ինչ տեղեր մաքուր է և կենդանի, ուրիշ տեղեր ալ պղտորուած և աղօտացած։ Դիտեցէք դարձեալ ուրիշ հրաշալիք մը, թանձր և խոնաւ ամպերը, որոնք գլխաւոր յատակին վրայ կ՚իջնէին մինչեւ շէնքերուն տանիքները, և վերջընթերին վրայ կ՚ընկղմէին անոնց ետեւի կողմը մինչեւ իրենց կոյտին մէջտեղը։ Բոլոր աջակողմն խանգարուած գոյն մ՚ունէր՝ կախուած սեաւ գորշաթուխ գոյնի մը մէջ։ Ես կը զմայլէի պէսպէս գունոց վրայ, զորս այս ամպերն կը սփռէին աչաց առջեւ, որոց մերձաւորագոյնքըն արեգակնային վառարանի բոցերով պայծառացած, և հեռաւորքն կարմրացած էին ոչ այնքան սաստիկ զինջարակով մը։ Ո՛հ, վըրձինի ի՛նչ գեղեցիկ հարուածք՝ որոնք այս

կողմէն կը գունաւորէին օդը, և զայն պալատներու ետեւի կողմը կը տանէին, ինչպէս որ կ'ընէ Տիտիանոս իւր դաշտանկարուց մէջ։ Մի քանի մասանց մէջ կ'երեւէր կապոյտ կանաչութիւն մը, միւսներուն մէջ կանաչ կապուտակութիւն մը, որոնք ստուգիւ խառնուեր էին քմահաճոյ գիւտով բնութեան, որ է՝ ուսուցիչ ուսուցչաց։ Աստ եւս նոյն ինքն էր, որ պայծառ և մութ գոյներով, կը թաթաւէր կամ կը կանոնաւորէր ձեւերը ըստ իւր գաղափարին։ Եւ ես որ գիտեմ, թէ ի՛նչպէս քու վրձինդ քու հոգւոյդ հոգին է, ինքն իրենս գոչեցի երեք կամ չորս անգամ. — Տիտի՛անոս, ո՞ւր ես դու»։ — Հոս կը ճանչցուին Վենետկեան նկարչաց պատկերի յատակներն. ահաւասիկ Պ. Վերոնացւոյ մեծամեծ սպիտակ ամպերն որք սիւնեարներու վերեւ կախուած անշարժ կը կենան. ահաւասիկ կապուտակ հեռաւորութիւնքն, անորոշ պայծառութեամբք բաբախող երեւոյթն, Տիտիանոսի կարմրորակ և բոսորագեղ ջերմ ստուերքն։

Դքսական պալատն. — Անձինք ժամանակին. — Պ. Վերոնացւոյ և Տիտիանոսի այլաբանական նկարչութիւնք. — Ցափշտակութիւն Եւրոպիոյ ։

Բուսոց ցեղեր կան, որոց տեսակներն իրարու այնքան մերձաւորք են, որ իրենց նըմանութիւնք կը յաղթեն զանազանութեանց. այսպիսի են նաև Վենետկոյ նկարիչք, ոչ միայն չորս հռչակաւորքն, Գիորգիոնէ, Տիտիանոս, Տինտորետտոյ, Պ. Վերոնացի, այլ և միւսներն ոչ ինչ նուազ անուանիք, երէցն Պալմա, Բոնիփակիոս, Պարիս Բորդոնէ, Պորդենոնէ, և Ռիդոլփեայ իւր կենսագրութեանց մէջ մի առ մի յիշատակած խումբն, ժամանակակիցք, նախնիք, յաջորդք մեծամեծ մարդկանց, Անդրէաս-Վիկենտինոյ, կրտսերն Պալմա, Զելոտտի, Բազակոյ, Պադովանինոյ, Բասսանոյ, Սքիավոնէ, Մորետտոյ և ուրիշ շատերն։ Աչաց առջեւ երեւցողն է ընդհանուր և հասարակաց տիպարն. մասնական և անձնական գըծագրութիւնք նախ ստուերի մէջ կը մնան։ Նոքա աշխատեր են ի միասին և յաջորդաբար

դքսական պալատին մէջ. սակայն, իրենց տաղանդներուն ակամայ միաձայնութեամբ, իրենց նկարչութիւնք ամբողջութիւն մը կը կազմեն:

Աչքերդ նախ կը զմայլին. ի բաց առեալ երեք կամ չորս սրահները, յարկերն ցած և փոքրիկ են: Տասանց ժողովոյն սրահն, ինչպէս և գինքը շրջապատողքն[1], ոսկեզօծ փոքրիկ բնակարաններ են՝ անբաւականք մէջը պտնուող նկարներուն համար. սակայն, վայրկենէ մը յետոյ, կը մոռնաս փոքրիկ բնակարանը և այլ ևս ուրիշ բան չես տեսներ բայց միայն նկարներ: Իշխանութիւնն և ցանկութիւնն հոն կ՚երեւին անսանձ և զօռող: Անկեանց մէջ, մերկ մարդիկներ, ներկարուած կարիատիդք, դուրս կը ցցուին այնպիսի քանդակով մը՝ որ առաջին նայուածով զանոնք արձաններ կը կարծես. վիթխարի փչում մը կ՚ուռեցնէ իրենց կուրծքերը. իրենց ազդրներն և իրենց ուսերն կը գալարուին: Ջեղունին վրայ, կը տեսնուի փարէն վեր Հերմէս մը, բոլորովին մերկ, և գրեթէ Ռուբէնսի նկար մը, բայց աւելի սաստիկ

1. Նկարեալք ի ձեռն Պ. Վերոնացւոյ, և իւր տեսչութեան ներքեւ, Ջելոտտիի և Բազակոյի ձեռօք:

հեշտասիրութեամբ մը։ Հսկայաձեւ Պլսիդոն մը յառաջ կը մղէ իւր ծովային ձիերը, որոնք կը ծփծփան ալիքի մէջ. իւր ոտքն վար կը սեղմէ կառքին բարձրացած եզերքը, իւր իրանն կը տապալի ահագին և կարմրորակ. Նա վեր կը վերցնէ իւր խալիգոնը անասնական աստուծոյ մը ուրախութեամբ. սաստիկ հողմն կը շառաչէ իւր լայնակամարին, իւր մազերուն և իւր մօրուաց մէջ. զայն չի տեսած՝ չես կարող երևակայել այսպիսի կատաղի ոստում մը, այսպիսի յորդութիւն մը կենդանական զօրութեան, այսպիսի ուրախութիւն մը հեթանոսական մարմնոյ, նըմանօրինակ յաղթանակ մը մեծ կեանքի՝ որ լկտի դարձած և թոյլցած է բացօթեայ և մէջտեղը։ Ինչպիսի՜ անիրաւութիւն բռնադատելն զվենետիկեցիս ի նկարչութիւն երջանկութեան և յարուեստ շողոմելոյ զաչս։ Նոքա նկարեցին նաև մեծութիւնը և դիւցազնութիւնը. ազդու և գործօն մարմինն զանոնք ինքն իրեն շարժեց. նման փլանդրիացւոց սոքա եւս ունին իրենց հսկաները։ Իրենց գծագրութիւնն, նոյն իսկ առանց գունոյ, բաւական է ինքն իրեն արտայայտել մարդկային շինուածոյն բովանդակ ամրութիւնը և բովանդակ կենդանականութիւնը։ Սոյն այս

սրահին մէջ կը տեսնուին Պ. Վերոնացւոյ չորս գործանկարներն, հինգ կամ վեց քողարկեալ կամ կիսամերկ կանայք, որոց ամենքն այլ այնպէս զօրաւորք են և այնպիսի հաստատուն կազմուած մ՚ունին, որ իրենց ազդրներն և իրենց բազուկներն կարող են խեղդել պատերազմող մը իրենց գրկախառնութեամբ. այսու հանդերձ ունին նաև այնպիսի պարզ կամ այնպիսի կատաղի դիմագծութիւն մը՝ որ իրենց ժպտին հակառակ, նոքա կոյսք են, ինչպէս Ռափայէլի Աստղիկներն և փսիքէներն ։

Որքան գիտես վենետկեան արուեստի գաղափարական նկարները, նոյնքան կը զգաս իւր ետեւը գիւղացական ժամանակի մը ազդեցութիւնը ։ Ճաղատ գլխով սաւեղինազգեստ մեծամեծ ծերունիներն՝ են Արքիպեղագոսի պատրիկ Թագաւորներ, բարբարոս սուլտաններ, որոնք՝ գետին քսելով իրենց մետաքսեայ զառքաշները, տուրքեր կ՚առնուն և գլխատութիւններ կը հրամայեն ։ Ժապաւինազարդ և ճապատուած երկայն պարեգօտներ հագած գոռոզ կանայքն՝ կայսրուհի դստերք են հասարակապետութեան, ինչպէս այն Կատարինէ Կորնարոյ՝ ուսկից Վենետիկն ընդունեցաւ զԿիպրոս ։ Նաւաստիք և նաւապետք ի-

րենց պղնձագոյն կրծոց վրայ ունին պատե-
րազմողաց մկանքներ. իրենց արեւէ և հովէ
կարմրացած մարմիններն կը վարնուին Ֆենի-
չէրիներու ըմբշական մարմնոց դէմ. իրենց
փաթթոցներն, իրենց մուշտակներն, իրենց
մաշկեակներն, իրենց թուրերու կոթերն գո-
հարեղիններովք աստեղազարդուած, բովան-
դակ ասիական պերճութիւնն կու գայ կը
խառնուի անոնց վրայ՝ վաղեմի ասուեղինա-
զգեստի ծածանմանց և հեթանոսական ա-
ւանդութեան մերկութեանց հետ։ իրենց
շիտակ նայուածքն թէ՛ խաղաղ և թէ միան-
գամայն վայրագ է, և արտայայտութեանց
կատաղութիւնն ու ողբերգական մեծութիւնն
կ՚աւետեն կեանքի մը մերձաւորութիւնը՝
յորում մարդն՝ ամփոփուած մի քանի պարզ
կրից մէջ՝ ուրիշ մտածութիւն չունէր բայց
եթէ տէր ըլլալ՝ գերի չըլլալու համար, և
սպաննել՝ չի սպաննուելու համար։ Այսպիսի
է Ցասանց Ժողովոյ սրահին մէջ պտուող Պ.
Վերոնացւոյ նկարչութեան մը ոգին, կը
տեսնուի հոն հինաւուրց պատերազմող մը և
դեռահասակ կին մը. այլաբանութիւն մ՚ է
այս, սակայն շատ չես վրդովիր առարկային
վրայ։ Մարդն նստած է և կը ծռի պաժան
դէմքով մը, ծնօտը դրած ձեռքին վրայ. իւր

վիթխարի ուսերն, իւր բազուկն, առիւծագլուխ սռնապանով մը պատուած իւր մերկ սրունքն՝ դուրս կ'ելնեն իւր ծալարուած մեծ ասուեղինազգեստէն. իւր փաթթոցով, իւր սպիտակ մօրուքով, իւր բազմահող ճակատով, յօգնած առիւծի գծագրութեամբք, ձանձրացող փաշայի մը դէմքն ունի նա: Կինն, աչքերը խոնարհեցուցած, կը դնէ իւր ձեռքերը իրեն փափկիկ կրծոց վրայ. իւր հրաշալի մազն զարդարուած է մարգարիտներով. նա կը թուի գերի մը որ իւր տիրոջ հրամանին կը սպասէ, և իւր պճրանոցն, իւր խոնարհած դէմքն, աւելի կենդանի կերպով ծիրանեգոյն կը ներկուին ստուերին մէջ որ զանոնք կ'ընկղմէ:

Գրեթէ բոլոր միւս սրահներն պատարկ են. նկարներն տարուած էին ներքին արուեստանոցի մը մէջ: Մենք կ'երթանք թանգարանի վերակացուն գտնելու. իրեն կ'ըսենք, անհարթ իտալերէն լեզուով մը, որ ո՛չ ներկայանալու թղթեր ունինք և ոչ տիտղոս կամ ո՛ր և իցէ իրաւունք մը ներս ընդունուելու՝ զանոնք տեսնելու համար: Ասոր վրայ նա ազնուութիւն մ'ընելով՝ մեզի առաջնորդեց վերապահեալ սրահը, մի առ մի մեզի ցուցնելու նկարները, և այս բանին համար նա երկու ժամ կորսնցուց:

Իտալիոյ մէջ երբեք քան զայս աւելի հաճոյք չունեցայ. նկարներն մեր աչաց տակ են, շիտակ. մենք կրնանք զանոնք դիտել այնքան մօտէն՝ որչափ որ կ'ուզենք, հանդարտաբար, և մենք միայնակ ենք։ Տինտորետտոյի թխաթույր հսկայքն կան, որոց մորթն մկանաց խաղով ծալ ծալ եղած է, սուրբ Անդրէաս և սուրբ Մարկոս, իրական հըսկայք՝ ինչպէս Ռուբէնսիններն։ Տիտիանոսի սուրբ Քրիստափոր մը կայ, տեսակ մը Ատլաս պղնձագոյն և խոնարհած, չորս անդամքն կ'աշխատին կրելու համար աշխարհի մը բեռը, և իր պարանոցին վրայ կայ՝ չափազանց հակապատկերով մը, ծիծաղկոտ և փափուկ փոքրիկ մանուկ մի, որոյ մանկական մարմինն ծաղկի մը փափկութիւնը և վայելչութիւնն ունի։ Մանաւանդ, կայ երկվեցեակ մը դիցաբանական նկարներու և այլաբանութեանց Տինտորետտոյի կամ Պ. Վերոնացւոյ, մի այնպիսի պայծառութեամբ, մի այնպիսի զմայլելի հրապոյրով, որով քօղ մը կ' ընկնի աչքերէն, կը յայտնուի անծանօթ աշխարհ մը, վայելից արքայութիւն մը ամեն երեւակայութենէ և ամեն ակնկալութենէ վեր։ Երբ Լեռնական Ծերունին իր կանանոցին մէջ կը փոխադրէր իր դեռա֊

հասակ քնէած անձինքը, զանոնք վերջին աստիճանի անձնանուիրութեան վարժեցնելու համար, անշուշտ սոյնօրինակ տեսարան մ'էր այն զոր կու տար նա իրենց։

Անհուն ծովու եզերքը, կողի մը վրայ, Արիանէ անժպիտ կ'ընդունի Բակքոսէն մատանի, իսկ Աստղիկն, ոսկեայ պսակով մը, օդոյ միջէն կ'իջնէ տօնելու համար իրենց ամուսնութիւնը։ Մերկ մարմնոյ գերագոյն գեղեցկութեամբ մը կ'երեւէր նա ջրէն դուրս ելնելու ժամանակ կենդանացած արեւով և ստուերներով երինազարդուած։ Դիցուհին կը լուղայ հեղուկ լուսոյ մը մէջ, և իւր գալարուած ուսն, իւր կողն, իւր բոլորակութիւնքն, կր բաբախին կէս մը ծածկուած թափանցիկ սպիտակ քօղի մը մէջ։ Ի՞նչ բառերով կարելի է նկարագրել կեցուածքի մը, գոյնի մը և շրջագծի մը գեղեցկութիւնը։ Ո՞վ կարող է ցուցընել առողջ և վարդագոյն մարմինը՝ ամենացանցառ պաստառի մը սաթագոյն թափանցկութեան ներքեւ։ Ի՞նչպէս ներկայացնելու է կենդանի ձեւի մը փափուկ լիութիւնը և անդամոց ծածանումը, որոնք կը շարունակուին վայրահակ մարմնոյն մէջ։ Նա ստուգիւ կը լուղայ պայծառութեան մէջ ինչպէս ձուկ մը իւր լճին

մէջ, և տարտամ ցոլմունքներով լեցուած օդն կը դողէ և կը փայփայէ զինքը։

Անոր քով կան երկու դեռահասակ կանայք, Խաղաղութիւնն և Առատութիւնն։ Դողդոջուն փափկութեամբ մը, Խաղաղութիւնն կը ծռի դէպ ի իւր քոյրը. Նա դարձած է, ստուերին մէջ միայն կը տեսնուի իւր գլուխն, սակայն անմահ երիտասարդութեան մը առողջութիւնն ունի նա։ Ինչպիսի՜ լոյս իրենց ոլորուն և հասկերու նման շիկակարմիր մազերուն մէջ։ Նոցա սրունքներն և մարմինքն կը ծռին։ Մին թուի թէ վայր կ'ընկնի, և շարժուն կորութեան այս սկզբնաւորութիւնն հիանալի է։ Ո՛չ մի նկարիչ այս աստիճան չէ զգայած ծալ ի ծալ կլորութիւնքը, և ո՛չ այնքան կենդանի կերպով ըմբռնած է շարժումը թռչելու առեն։ Նոքա կ'երթան հանգչելու կամ քալելու. աչքն և հոգին ակամայ կը հետեւին նոցա ընթացքին. Նոցա ներկային մէջ կը տեսնուի ապագայ մը և անցեալ մը. փախստական վայրկեան մ'է այն զոր արուեստաւորն կեցուցեր է, բայց վայրկեան մ'է լեցուն այն ամեն բանով՝ որ զինքը կը շրջապատէ։ Բաց ի Ռուբէնսէն ոչ ոք այնպէս լաւ բացատրեր է կենաց անդադար հոսումը և ծորականու֊

թիւնը։ Սակայն Աթենաս կը հեռացնէ Ա-րէսը, և իւր այրական զրահը սեաւ ցոլմանց միջէն դուրս կը ցատքեցնէ անդիմադրելի պչրանօք մը իւր ուսին և իւր ծնկան հրա-շալի սպիտակութիւնը։

Դեռ աւելի կենդանի և հեշտալի է այն նազանքն որ կ'երեւի երեք Շնորհաց և Հեր-մեսի խմբին մէջ։ Երեքն եւս խոնարհած են. ըստ Տինտորետտոյի, մարմին մը կեն-դանի չէ երբ իւր նստուածքն անշարժ է. հակեալ մարմնոյ ծաւալումն՝ շարժուն շնորհք մը կ'աւելցընէ ընդհանուր հրապոյրին վրայ որ դուրս կը ցոլանայ իւր բովանդակ գեղեց-կութենէն։ Այդոնցմէ մին, նստած, կը տա-րածէ բազուկները, և կողին վրայ զարնող լոյսն մասամբ կը լուսաւորէ իւր դէմքը, իւր պարանոցը և իւր ծոցը՝ ստուերի ան-որոշ ծիրանւոյն վրայ։ Իւր քոյրն, ծունր դը-րած, աչքերը խոնարհեցուցած, անոր ձեռքը կը բռնէ. երկայն պաստառ մը, այնպէս նուրբ՝ ինչպէս այն արծաթագոյն կտաւները, զորս այգն կը լուսաւորէ առաւօտուն դաշտաց մէջ, կը պատէ իւր իրանին չորս կողմը և կ'ուռի իւր ծոցին վրայ, որով նա կէտ կէտ կը նշանէ կարմրութիւնը։ Միւս ձեռքով նա կը բռնէ բացուած ցօղուն մի ծաղկանց որք

վեր կը բարձրանան, թողլով իրենց ձիւնա-
լից սպիտակութիւնը գիրուկ բազկի ծիրա-
նեգոյն սպիտակութեան վրայ։ Ցետինը, գա-
լարուած, բոլորովին ինքզինքը ի ցոյց կը
դնէ և, ծոծրակէն մինչեւ կրունկը, աչքն
կը հետեւի մկանկներու իրարու հետ փաթ-
թուելուն, որոնք կը պատեն իր ողնաշարին
և իր կողերուն փառաւոր կազմածը։ Ալե-
ձեւ մազեր, փոքրիկ կզակ, բոլորաձեւ ար-
տեւանունք, քիչ մ'ոլորուն քիթ, սատափէ
խեցւոյ մը նման գալարուն սիրուն ականջ-
ներ, բովանդակ դէմքն կ'արտայայտէ չա-
րաճճիութիւն և զուարթ խորամանկութիւն
մը. կրնայ ըսուիլ համարձակ կին մը։

Այս է ահա նշանն՝ որով կը ճանչցուի
Տինտորետտոյ, աւելի անհարթ ու դաժան,
նոյնպէս և իր գոյներու խառնուածքին մէջ
աւելի սաստիկ, իր շարժման մէջ աւելի
անսանձ, իր մերկութեանց մէջ աւելի այ-
րական։ Պ. Վերոնացին կը գործածէ աւելի
արծաթափայլ և աւելի վարդագեղ գոյներ,
աւելի անոյշ կերպարանքներ, քիչ սեւորակ
ստուերներ, աւելի շռայլ և աւելի թարմ
զարդարանք մը։ Կիսասեան մը մօտ, մեծղի
և ազնուական կին մը, ճարտարութիւնն,
նստած Անմեղութեան քով, կը հիւսէ օդե-

դէն կտաւ մը. իւր ծիծաղկոտ աչկունքն պարձած են դէպ ի կապուտակն երկնից. իւր ոլորուն շէկ մազերն լի են լուսով, իւր կիսաբաց բերանն կը թուի նուա մը. տարտամ ժպիտ մը կիսով չափ կը ցուցընէ իւր սատափէ ակռաները, և այն պայծառութիւնն՝ որով թաթաւուած է՝ պայծառ առաւօտեան մը վարդափայլ գոյնն ունի։ Միւսն, փոքրիկ գառնուկի մը քով, կը խոնարհի՝ բոլորովին թողած ինքզինքը. իւր մետաքսեայ ասուեղինին արծաթափայլ ցոլմունքն կը լուսաւորեն նորա չորս կողմը. իւր գլուխն ստուերի մէջ է, և արշալուսոյն կարմրութիւնքն հազիւ թէ կու գան թեթեւակի կը դպչին իւր շրթանց, իւր ականջին և իւր այտին։

Աննկարագրելի են սոյնպիսի կերպարանքներ. յառաջուց չերեւակայուիր թէ ի՛նչ բանաստեղծական բան կրնայ գտնուիլ հոն զգեստի մը և զարդարանքի մը մէջ։ Պ. Վերոնացւոյ մի ուրիշ նկարին մէջ, Վենետիկ դշխոյն գահի մը վրայ բազմեր է ընդ մէջ Խաղաղութեան և Արդարութեան. ոսկեայ շուշանով ասղնեգործուած իւր մետաքսեայ սպիտակ պարեգօտն կը ծածանի կընդմենի և ծիրանեգոյն վերարկուի մը վրայ. իւր բազուկն, իւր քնքուշ ձեռքն, փոքրիկնե-

րով վեր դարձած մատունքն, կը սփռեն իրենց մնգուսեղէն՝ ոսկիտակութիւնները, իրենց օձաձեւ փափկիկ շրջագծերը փայլփլուն պաստառին վրայ։ Դէմքն ստուերի մէջ է, — կապուտակ և շօշափելի օդով վարդակարմիր դարձած կիսաստուեր մը որ տակաւին կենդանութիւն կու տայ կարմրափայլ շրթանց. շրթունքներն կեռասներ են, և այս բովանդակ ստուերն պայծառացած է մազերու լոյսերով, պարանոցին և ականջաց վրայ գլտնուող մարգարիտներու անոյշ փայլով, վարսակալի շողշողմամբ՝ որուն գոհարեղէնքն գիւթական աչքեր կը թուին։ Նա կը ժպտի զուարթափայլ արքայավայել և ազնուական դէմքով մը, ինչպէս ծաղիկ մը՝ որ գոհ է բացուելուն և բացուած ըլլալուն վրայ։ Անոր քով, խաղաղութիւնն խոնարհած ինքզինքը բոլորովին կը թողու, գրեթէ ընկնալու վրայ է, կարմիր ծաղիկներով ճամկաւոր իւր դեղին մետաքսեայ շրջազգեստն կը ճապատուի ամենաճոխ մանիշակագոյն վերարկուին ներքեւ։ Մարգարտաց պարուրաձեւ ծոպերն կը պլլուին իւր սպիտակ քօղին ներքեւ իրենց տժգոյն հիւսուածոց մէջ, և ինչպիսի՜ հիանալի փոքրիկ ականջ։

Դեռ աւելի հռչակաւոր նկար մ՚ալ կայ.

Ցափշտակութիւն Եւրոպիոյ. որուն հաւասարը չկայ՝ թէ՛ իր գունոց խառնուածոյն պայծառութեան, թէ՛ երեւակայութեան, և թէ՛ նրբութեան և չափազանց հնարագիտութեան պատճառաւ: Բարձր տերեւաձեւ զարդերու ցոլացումն՝ ջրային կանաչորակ գունով մը կը թաթաւէ բովանդակ պատկերը. Եւրոպիոյ պատեանն այնու ներկուած է. նա, նուրբ, նուազկոտ, գրեթէ ութեւտասներորդ դարու պատկեր մը կը թուի: Այն ձեռագործներէն մին է սա, յորում՝ գոյներու խառնուածով և հետազօտութեամբ՝ նկարիչ մը չափէն անդին կ՚անցնի, կը մոռանայ իր համարակութիւնը, կ՚ընկղմի իր արուեստին մինչեւ չքննուած սահմանները, և մէկդի թողլով բոլոր ծանօթ կանոնները՝ կը գտնէ զգալի երեւոյթին ռամիկ աշխարհէն անդին, միութիւններ, հակապատկերներ, նորօրինակ յաջողութիւններ, ամեն հաւանականութենէ և ամեն չափէ դուրս: Ռամբրանտ այսպիսի ձեռագործ մ՚ըրած է իր Շրջան գիշերապահից[1] կոչուած նկարին մէջ: Հարկ է դիտել և բնաւ չի խօսիլ:

1. Ronde de nuit.

*Տիտիանոս. — Իւր կեանքն և բնաւորութիւնն. — Իւր նկարներն Ակադեմիոյ մէջ. — Վերափոխումն Ս. Կուսին. Փրկագործ Ս. Աստուածածին. — Աբրահամու զոհն. — Աբէլ և Կայէն։*

Ռիդոլփեայ կենսագրութիւնքն շատ չոր են, և ինչ որ Վազարի կը յաւելու քիչ բան մ'է։ Երբ ուզես երեւակայել Տիտիանոսը, պիտի նկատես զինքը երջանիկ մարդ մը, « երջանկագոյնն և քան զամենն աւելի առողջն իւր նմանեաց մէջ, որ յերկնից ուրիշ բան ընդունած չէ՝ բայց միայն շնորհք և երջանկութիւնք », առաջինն բոլոր իւր նախանձորդաց մէջ, որ իւր տան մէջ կ'ընդունի Գաղղիոյ և Պոլոնիոյ թագաւորաց այցելութիւնը, սիրականն կայսեր, Փիլիպպոս Բ՛, դքսերուն, Պաւղոս Գ. քահանայապետին, բոլոր իտալացի իշխանաց, կ'անուանուի ասպետ և կոմս պետութեան, որ կը ստանայ շատ յանձնարարութիւններ, առատօրէն կը վճարուի իրեն, թոշակ կը սահմանուի, և լաւ կերպով կը գործածէ իւր ճոխութիւնը։ Նա տնական լաւ վիճակ մ'ունի, փառաւորապէս

կը հագուի ; իւր սեղանը կ'ընդունի ծիրանաւորներ, իշխաններ, և իւր ժամանակին ամենէն մեծ արուեստաւորները և ամենէն վարժ գրագէտները։ « Թէպէտեւ նա շատ գրագիտութիւն չունի », սակայն իւր դիրքին մէջ նա այս բարձրագոյն ընկերութեան մէջն է. վասն զի նա « բնական հանճար մ'ունի, և միջոցներու գործածութիւնն իրեն սովրեցուցած է ազնուականի և աշխարհային մարդու բոլոր ազնիւ զրուցատրութիւնքը », այնպէս որ « շատ բարեկիրթ » կը թուի նա, ունենալով գեղեցիկ քաղաքավարութիւն մը և անուշիկ կերպեր և ձեւեր »։ Իւր բնաւորութեան մէջ չունի նա բնաւ ծայրայեղ և տարօրինակ բան մը։ Իւր նկարներուն և Թոշակաց նկատմամբ գրած նամակներն առ իշխանս և առ պաշտօնեայս, խոնարհութեան կնիք մ'ունին, որ այն ժամանակ հպատակի մը կենցաղագիտութիւնն էր։ Նա լաւ գիտէ մարդկանց հետ վարուիլ, լաւ գիտէ կեանքը գործածել, այսինքն է կը գործածէ կեանքը մարդկանց պէս, առանց ծայրայեղութեան և ոչ ալ ցածութեամբ։ Նա բնաւ խստակեաց չէ. Արետինի հետ ունեցած իւր յարաբերութիւնն կը ցուցընէ, թէ զուարթ մարդ մ'է, կ'ուտէ և կ'արբենայ յօժարութեամբ և ազնիւ կերպով,

կ՚ախորժի երաժշտութիւնը, գեղեցիկ շռայլութիւնը և մեղկ կանանց ընկերութիւնը։ Նա ամենեւին բուռն չէ, յուզուած չափազանց և ցաւալից մտածութեամբք. իւր նկարչութիւնն առողջ է, զերծ հիւանդոտ արուեստակութենէ և տաժանելի խառնակութիւններէն. անդադար կը նկարէ նա, առանց յոգնեցնելու գլուխը, առանց զայրանալու, իւր բովանդակ կենաց մէջ։ Բոլորովին տղայական հասակէն սկսաւ նա, և իւր ձեռքն բնական կերպով հպատակեցաւ իւր հանճարոյն։ Նա կ՚ըսէ, թէ «իւր տաղանդն մասնաւոր շնորհք մ՚է երկնից», թէ պէտք է ունենալ այս ձիրքը լաւ նկարիչ լինելու համար, ապա թէ ոչ «տձեւ ձեռագործներ միայն կարելի է յառաջ բերել», և թէ այս արուեստիս մէջ «հանճարն պէտք չէ յուզուած լինել»։ Նորա շուրջը, գեղեցկութիւնն, ճաշակն, դաստիարակութիւնն, իւրայնոց տաղանդն, իբրեւ հայելիներ կը ցոլացունեն իւր հանճարոյն պայծառութիւնը։ Իւր եղբայրն, իւր որդին Որասիոս, իւր երկու հօրեղբօրորդիքն, Կեսար և Փաբրիկիոս, իւր ազգականն Մարկոս Տիտիանոս, գերազանց նկարիչներ են։ Իւր Լաւինիա դուստրն, Փլորայի պէս հագուած, պտղոց կողով մը գլխոյն վրայ, անոր հայ-

թայթեց իբր օրինակ իւր մարմնոյն առոյգութիւնը և իւր հիանալի ձեւերուն ընդարձակութիւնը։ Իւր մտածութիւնն կը սահի կ՚անցնի այնպէս, ինչպէս ընդարձակ գետ մը իւր միահարթ անկողնոյն մէջ. ոչ մի բան չի արգելուր նորա ընթացքը, և իւր գեղումն իրեն կը բաւէ. Նա իւր արուեստէն դուրս ուրիշ բան չի դիտեր, Լեւոնարդի կամ Միքայէլ Անգեղոսի նման։ «Ամեն օր նա բան մը կը գծագրէ կաւիճով կամ ածուխով». ընթրիք մը Սանսովինոյի կամ Արետինի հետ կը լրացընէ ամբողջ օրը։ Նա չի փութար. երկար ժամանակ իւր քովը կը պահէ իւր նկարները, որպէս զի զանոնք կրկին աչքէ անցունէ և աւելի եւս կատարելագործէ։ Իւր նկարներու ներկերն չեն թափիր. իւր Գէորգիոնէ վարժապետին պէս նա պարզ գոյներ կը գործածէ, «մանաւանդ կարմիրը կամ կապոյտը, որոնք բնաւ չեն խանգարեր կերպարանքները»։ Ութսունէն աւելի տարիներու մէջ, այսպէս կը նկարէ նա, և գրեթէ կենաց դար մը կը լրացնէ. այն ալ ժանտախտով կը վերջանայ, և պետութիւնն իւր օրինաց զանցառութիւն կ՚ընէ՝ անոր հասարակաց յուղարկաւորութեան հանդէս կատարելու համար։ Հարկ է հեթանոսական հնու֊

թեան ամենէն գեղեցիկ օրերը ելնել՝ գըտ-
նելու համար իրաց հետ այնքան լաւ պատ-
շաճած հանճար մը, այնքան բնական և այն-
քան ներդաշնակ ծաւալում մը կարողու-
թեանց, իրեն և արտաքիններուն հետ այն-
քան յարմարած մարդ մը։

Ակադեմիոյ մէջ կարելի է տեսնել իւր
հանճարոյն զարգացման երկու ծայրայեղու-
թիւնքը, իւր վերջին նկարն, Վայրիջումն
Քրիստոսի ի խաչէն, զոր և աւարտեր է
կրտսերն Պալմա, և իւր առաջին նկարներէն
մին, Այցելութիւն մը, զոր անշուշտ յօրի-
նած է Յովհաննու Բիլլինիի դպրոցը թողլու
ժամանակ։ Սորա մէջ շրջագծերն դադրած
են. սրբոյն Յովսեփայ դէմքն գրեթէ չորցած
է, գոյնի զգացումն յերեւան կու գայ թանձր
երանգի սաստկութեամբ, գունոց հակադրու-
թեամբք, աժգոյն մանիշակեայ պարեգօտի մը
փափկութեամբ՝ որ կենդանութիւն կու տայ
վերարկուի մը լիուլի կապուտակութեան։
Դարձեալ խորանի նկար մ՚է այս, յարգելի
աւանդավէպի մը չափաւոր յիշատակարանն։
Իւր ասպարիզին միւս ծայրը, աւանդավէպը
կը յօրինէ նա հոյակապ և շքեղ զարդագոր-
ծութիւն մը։ Վայրիջումն Քրիստոսի ի խա-
չէն կոչուած իւր այս նկարին մէջ նախ և

առաջ աչքի կը զարնէ շտկուած ընդարձակ ճարտարապետութիւն մը սպիտակ և գորշագոյն, աւելի եւս ազդու կերպով դուրս ցատքեցնելու համար ասուեղինաց և մարմնոյ գոյնը. հոյակապ արձաններով և առիւծալուխ պատուանդաններով շրջապատուած կամարակապ սրահ մը, ուր կենդանի ծաղկունք օձաձեւ կը պլլուին մարմարիոնաց անփայլ պայծառութեան վրայ. լուսոյ և ստուերի գեղեցիկ արգասիքներ՝ զորս արեւն մաս մաս կը ծաւալէ կամարներու բոլորակութեանց վրայ։ Անոնց վարը, Մագդաղենացւոյն կանաչորակ շրջազգեստն, Նիկոդեմոսի կարմրորակ մեծ վերարկուն՝ իրենց թաթաւուած գոյներովը կը միաբանին տարօրինակ կերպով լուսաւորուած դիակի ամոյն գոյնին հետ. ծերունի աշակերտն ի ծունր խոնարհած վերջին անգամ մ՚այլ կը սեղմէ իր վարդապետին ձեռքը, Մագդաղենացին թեւերը բանալով մեծ աղաղակ մը կը հանէ։ Կարելի է կոչել զայն՝ հեթանոսական ողբերգութիւն մը. արուեստաւորն մոռցած գրեթէ իր քրիստոնեայ լինելը, այլ եւս ուրիշ բան չէ՝ բայց միայն արուեստաւոր։ Հոս է վեշտասաներորդ դարու բովանդակ պատմութիւնն ի Վենետիկ, ինչպէս և այլուր. սակայն Տիտիա-

նօսի ձեռագործաց մէջ այս կերպարանափոխութիւնն շատ չուշացաւ ։ Երիտասարդութեան ժամանակ շինած մեծ նկար մը Ընծայումն Ս. Կուսին, կը ցուցընէ թէ ի՛նչ յանդըգնութեամբ և դիւրութեամբ կը մտնէ նա, իւր հանճարոյն առաջին քայլերէն սկսեալ, այն ասպարիզին մէջ՝ որուն ծայրը պիտի հասնի ։ Մինչդեռ Փլորենտացիք, ոսկերչաց ձեռօք բարձրացած, անհատական մարմնոյ նմանութեան մէջ կ'ամփոփեն նկարչութիւնը, Վենետիկեցիք՝ իրենք իրենց թողուած, զայն կը լայնցընեն՝ հոն ամփոփելու չափ ամբողջ բնութիւնը ։ Իրենց տեսածն մարդ մը կամ խումբ՝ մը չէ, այլ տեսարան մը, հինգ կամ վեց ամբողջ խմբեր, ճարտարապետութիւնք, հեռաւորութիւնք, երկինք մը, դաշտավայր մը, համառօտ ըսել՝ կենաց ամբողջ կտոր մը. հոս կան յիսուն անձինք, երեք պալատք, տաճարի մը ճակատն, կամարակապ սրահ մը, կոթող մը, բլուրներու հեռաւորութիւնք, լեռներ և ամպոց ժայռեր վրայէ վրայ դրուած օդոյ մէջ ։ Գորշագոյն ահագին սանդուխի մը ծայրը կեցեր են քահանայք և մեծ քահանայապետն ։ Սակայն, աստիճանաց մէջտեղ, փոքրիկ աղջիկն, կապուտակ՝ դեղնագոյն պսակի մը մէջ, վեր կ'ելնէ վերցը-

նելով իւր պարեգօտի ծայրը. նա բնաւ վսեմ բան մը չունի, նա կայտառ է, բոլորակք են իւր սիրուն փոքրիկ այտերն. իւր ձեռքը կը վերցընէ դէպ ի քահանայապետն, իբր ուշ դնելու պէս և անոր հարցնելու՝ թէ ինչ կ'ուզէ իրմէն. ստուգիւ աս մանուկ մ'է, տակաւին ոչ մի մտածութիւն չունի նա. Տիսիանոս նորա նմանները կը գտնէր քրիստոնէական վարդապետութեան ժամանակ: Կը տեսնուի որ նա բնութեան կը հաւնի, կեանքն իրեն կը բաւէ, անկէ անդին ուրիշ բան չի փնտռեր, իրական բաներու բանաստեղծութիւնն շատ մեծ կը թուի: Առաջին կարգին մէջ, տեսնողին դիմացը, սանդուխին ստորոտը, կեցուցած է նա՝ կապոյտ պարեգօտով և սպիտակ կնգուղով՝ տըրտռացող պառաւ մը, ճշմարիտ գեղջկուհի որ կու գայ իւր առուտուրը ընելու քաղաքին մէջ, և հոն կը պահպանէ իւր ունեցած հաւկիթներու և վառեակներու կողովը. Փլանդրիացի մը պիտի չի կարենայ աւելի յաջողցընել: Բայց ճիշդ անոր մօտ, աստիճանաց վրայ պլլուած խոտերուն ներքեւ կայ հին կիսանդրի մը. երկայնազգեստ կանանց և արանց փառաւոր թափօր մը կը տեսնուի աստիճանաց ստորոտը. բոլորաձեւ կամարակապք, կորնթական

սիւներ, արձաններ և քիւեր, հրաշալի կերպով կը զարդարեն պալատներու ճակատները։ Կարծես թէ իրական քաղաքի մը մէջ ես, լեցուած քաղաքացիներով և գիւղացիներով, ուր կ'ուսանին արուեստներ, կը կատարեն իրենց ջերմեռանդութիւնքը, բայց հնութեամբք զարդարուած, շէնքերով շքեղացած, արուեստիւք պճնուած, արեւով լուսաւորուած, փառաւոր և ճոխ դաշտավայրի մը մէջ զետեղուած։ Փլորենտացիք՝ աւելի խորհող և աւելի իրերէն զատուած ծնելով՝ կը հնարեն մերինէն դուրս գաղափարական և վերացեալ աշխարհ մը. իսկ Տիտիանոս՝ աւելի ինքնաբուխ և աւելի երջանիկ՝ կը սիրէ մեր աշխարհը, կ'ըմբռնէ զայն, անոր մէջ կ'ամփոփուի, և զայն յառաջ կը բերէ գեղեցկացնելով՝ առանց վերստին ձուլելու զայն և ոչ ալ ջնջելու։

Եթէ փնտռուի գլխաւոր նշանն որ կը զանազանէ զինքը իւր մերձաւորներէն, այն ժամանակ կը տեսնուի թէ նա պարզ է, առանց նրբանալու գունոց խառնուածոյն, շարժման և կերպարանաց մէջ, և սակայն գունոց խառնուրդի, շարժման և կերպարանաց մէջ յառաջ կը բերէ նա զօրաւոր արգասիքներ։ Այսպիսի է իւր այնքան հռչակաւոր

վերափոխման պատկերին բնագրոշմն ։ Կարմրորակ, ծիրանի և սաստիկ գոյն մը կը ծածկէ բոլանդակ նկարը. սա ամենէն աւելի զօրաւոր գոյնն է, և այնու տեսակ մը ատողջ ազդեցութիւն կ'արտաշնչի բոլանդակ նկարին վրայէն ։ Վարը կան առաքեալք խոնարհած, նստած, գրեթէ ամենքն ալ գլուխնին զէպ ի յերկինս վերուցած, Ալբիական ծովու նաւաստեաց պէս պղնձագոյնք. իրենց մազերն և մօրուքնին սեւ են. թանձր ստուեր մը կը թաթաւէ դէմքերը. սա այնպիսի երկաթախառն չէկ գոյն մ'է որ հազիւ կ'որոշէ զմարմինը ։ Անոնցմէ մին մէջտեղը կեցած, գորշագոյն վերարկուի մը մէջ, գրեթէ կ'աննետանայ շրջակայ պայծառութեամբ մըթընցած խորութեան մէջ ։ Ծնչերակաց կենդանի արեան պէս՝ երկու կարմիր աստեղէնք մէջտեղ կ'ելնեն, զեռ աւելի կենդանացած երկու մեծ կանաչ վերարկուաց հակապատկերովն. ասիկայ վիթխարի խռովայոյզ շարժում մ'է ոլորուն բազկաց, մկնեղ ուսոց, կրքոտ գլխոց, ճապատուած ստուերինաց ։ Անոնց վերեւ, օդոյ մէջ, Ս. Կոյսն կը բարձրանայ հնոցի մը զոլորշւոյ նման վառվռուն փառաց մէջ. նորա կազմուածն առողջ է և ուժով, առանց զմայլման և առանց խորհրդական

ժպտի, վեհ կերպով ամփոփուած իւր շիկա-
գոյն պարեգօտին մէջ զոր կը քօղարկէ կա-
պոյտ վերարկու մը։ Պաստառն անթիւ ծալ-
քերով կը ծալլուի իւր գերապանծ մարմնոյն
շարժման մէջ. իւր կեցուածքն ըմբշական է,
արտայայտութիւնն լուրջ, և իւր դէմքին ան-
փայլ գոյնն բարձր քանդակով մը վեր կ'ելնէ
պսակին փայլման վրայ։ Իւր ոտից քով,
միջոցին ամբողջ լայնութեան վրայ, կ'երևի
հիանալի դրասանգ մը փոքրիկ հրեշտակաց.
իրենց ծիրանեգոյն, վարդագոյն և ստուերա-
թափանց մարմնոյ երանգներն այս ազդու
գունոց և ձևոց մէջ կը մտցընեն կենաց
ծիծաղկոտ ծաղկումը. առանցմէ երկուքն միւ-
ներէն զատուելով՝ կու գան խաղալու լուսոյ
մէջ, որոց մանկական անդամքն օդոյ մէջ կը
բացուին չնաշխարհիկ ճկունութեամբ մը։ Զիք
ինչ մեղկ կամ թոյլ. վայելչութիւնն հոն
այրական է։ Լուրջ կորովոյ և փայլփլուն ե-
րիտասարդութեան ամենէն գեղեցիկ հեթա-
նոսական հանդէսն է այս. վենետկեան ա-
րուեստին կեդրոնն հոս է և գուցէ գագաթ-
նակէտն։

Տիտիանոսի նկարքն շատ բազմաթիւ չեն
ի Վենետիկ, Եւրոպան զանոնք ամբողջ գը-
նած է. բայց դեռ բաւական կը գտնուի՝

բոլանդակութիւնը բացայայտելու համար։ Նա այս միակ ձիրքը ունեցաւ՝ որ թէ՛ Աստղիկներ շինեց՝ որոնք իրական կանայք են, և թէ հսկաներ՝ որոնք իրական մարդիկներ են, այսինքն է տաղանդ մ՚ ունեցաւ նա իրաց շատ մօտէն նմանելու երբ ցնորքն զմեզ կը գրաւէ, և իրերը շատ խորին կերպով այլափոխելու՝ երբ երազն կը զարթնու ի մեզ։ Նա մի և նոյն մերկ գեղեցկութեամբ յերեւան հանեց անհամեստ կին մը, պատըրկի տիկին մը, անհոգ կամ հեշտասէր մեղաւորի դուստր մի, և միանգամայն մտացածին կորովի կերպարանք մը, ծովային դիցուհւոյ մը այրական զօրութիւնը, և երկնային դշխոյի մը ծալ ի ծալ ձեւերը։ Մի և նոյն զգեստաւորուած նկարին մէջ ներկայացուց նա խաչակրաց պատերազմող պատրիարք մը, ծովային պատերազմաց ծերունի դիւցազ մը, մկնեղ և ըմբիշ մարտիկ մը, ատենակալի կամ սուլտանի վայրագ և շքեղ կերպարանք մը, կայսերական կամ հիւպատոսական պինդ գլուխ մը, և միանգամայն կամ բոլորովին անոր քով՝ ուռած երակներով հին ժամանակի զինուոր մը, ակնոցաւոր ծեր դատաւորի մը հասարակ դէմքը, մօրուանի Սկլաւոնացւոյ մը անասնական կնճիթը, ցականա-

ու Թիւլարի մը կարմրորակ ողնաշարը և
վայրենի նայուածքը, Թթու հրէի մը սափ-
կած գանկը և անգղային աչքը, գէր դահճի
մը գազանաբարոյ զուարթութիւնը, այն բո-
լոր տարտամ ազգակցութիւնները՝ որոնք մար-
կային բնութիւնն կը միանայ կենդանական
բնութեան հետ։ Իրական բաներու այս ի-
մացականութեամբ, արուեստի ասպարէզն կը
տասնապատկի։ Նկարիչն այլ եւս ստիպուած
չէ, ինչպէս դասական վարժապետներն, ան-
զգալապէս փոփոխելու տասնուհինգ կամ քսան
գունոց խառնուածներ ընդունած օրինակին։
Բնութեան անհուն զանազանութիւնը, իր
բարձրութեամբք և ցածութեամբք, բաց է
իրեն առջեւ. ամենէն զօրաւոր հակապատ-
կերք իր ձեռաց ներքեւ են. իր ձեռա-
գործներէն ուրաքանչիւրն այնչափ ճոխ է՝
որչափ նոր. դիտողն նորա ձեռագործաց մէջ
կը նշմարէ, ինչպէս Ռուբէնսին, աշխարհի
կատարեալ պատկեր մը, պատմութիւն մը,
հակիրճ կերպով՝ հոգեբանութիւն մը։ Փոքրիկ
գերագոյն Ոլիմպոսի տակը՝ ուր կը բազմին
մի քանի յունական պատկերներ, որոնք կը
դիտուին միշտ ծնրադիր յունադաւաններէն,
արուեստաւորն ժառանգեց չէնցած մեծ եր-
կիրը՝ ուր կը նորոգուի անդադար իրաց ծաղ-

կումն ։ Դիպուածն, անկանոնութիւնն, ամեն ինչ իրեն համար լաւ է. նոքա այժերու մասն մ՚են՝ որոնք կը վազեցնեն մարդկային կենդանական հիւթը. տձեւութիւնք, ծայրայեղութիւնք նոյնքան կարեւորք են՝ որքան զուարթութիւնք և պայծառութիւնք. իւր միակ պէտքն է զգալ և տալ զօրաւոր մղումն ներքին բուսականութեան, որ կը բարձրացնէ անտաշ նիւթը և զայն կը յղկէ կենդանի ձեւերով արեւու ջերմութեան ներքեւ ։ Ահաւասիկ այն գաղափարներն՝ որք մտացդ մէջ կը խռնուին, երբ կը դիտես իւր նկարները, որք կը գտնուին Ս. Ռոքոսի, փրկագործ Ս. Աստուածածնայ և Ս. Յովհաննու եկեղեցեաց մէջ, ինչպէս նաև եթէ միտքդ բերես իրեն այն նկարները՝ որք են ի Հռոմ, ի Նէապոլիս, ի Փլորենտիա և ի Լոնդրա ։ Կանգ կ՚առնուս այն փրկագործ Ս. Աստուածածնայ եկեղեցւոյն մէջ. կը ժպտիս Ղուկաս Յորդանոյի վարդագոյն և բոլորակ սիրուն հաղորդուողաց առջեւ ։ Հոն մէկդի կը թողուին արուեստակեալ զարդագործութիւնք և ձեւացեալ արձանք, զորս եօթնեւտասներորդ դարու արուեստաւորք ի ցոյց դրած էին կամարաց ներքեւ ։ Կ՚իմանաս թէ ինչ կ՚արժէ պարզ և կորովի հանճարն, որ զոհ կ՚ըլլայ

նմանելով և ոյժ տալով բնութեան։ Կը տեսնես դասի ձեղունին վրայ, յետոյ աւանդատան մէջ, Ամբակումայ առնացի հռովմէական դէմքը, Եղիայի պղնձագոյն և ողբերգական դիմակը գրեթէ սեւ իր սպիտակ խոյրին ներքեւ, ճաղատ սուրբ Մարկոս մը՝ որ ետեւը կ՚ընկնի, այնպիսի վեհ դէմքով մը որ և կը գունաւորի այնքան գեղեցիկ ցոլացմամբ մը երիտասարդութեան, յորում կը տեսնուի մեծամեծ անընկճելի ցեղերու կենդանութիւնն հակառակ տարիներու յարձակման։ Ամեն բանէ վեր կրկին կ՚ուզես գալ ձեղունի նկարներուն առջեւ. Գողիաթ սպանեալ ի Դաւթէ, Աբրահամ որ կը զոհէ իւր որդին, Կայէն որ կը սպաննէ զԱբէլ։ Այս հսկաներու համարձակութեան և թռիչին մէջ կը ճանչցուի այն անհարթ ձեռքը, որ գծագրեց երեւելի պատկերագրութիւնները, Վեց սուրբքն, ահաւոր Անցքն կարմիր ծովուն։ Բաց ի Միքայէլ Անգեղոսէ, ոչ ոք այսպէս գործածեց մարդկային կազմածը։ Աբրահամ հսկայ և սպանիչ մ՚է. երբ տեսնես իւր սպիտակախառն մազը և մօրուքը, իւր ազդրը և իւր երկու մերկ բազուկները՝ որոնք ուժով մը դուրս կ՚ելնեն իւր վեղնորակ ասուեղէնէն, կ՚իմանաս թէ ճշմարիտ նահապետի մը

առջեւ ես, որ կը պատերազմի և կը նուաճէ մարդիկները. նա վեր կը վերցընէ բազուկը, և բոլոր իւր մկանքներն կը դիմեն զարնելու, փոքրիկ իսահակայ գլուխն արդէն ծըռեր է նորա բուռն ձեռաց ներքեւ: Շարժումն այնքան սաստիկ է, որ թռիչ մը միայն կ՚անցնի երեք անձանց միջէն, յետոյ հրեշտակին աչքերէն՝ որ կը գահավիժի արգիլելով սուրը՝ մինչև կէս գծլարուն մարմինը մարդուն՝ որ կը դառնայ, և անոր միջէն մինչեւ ծունր դրած մանկան ծռած պարանոցը: — Շատ աւելի կատաղի է եղբայրասպանին շարժուածքը. ոչ թէ Տիտիանոս զայն զգուելի կ՚ընէ, այլ ընդհակառակն, իւր սաստկութիւնն կ՚առնու կը տանի հանդիսատեսը. մարդասպան մը չէ այս, այլ Հերակլէս մը որ կը սպաննէ թշնամի մը: Աբէլ կողին վրայ խոնարհած կը սահի կ՚ընկնի, տարածելով չորս անդամները: Միւսն, ըմբըշի մը պէս վիթխարի և մկնեղ, մէկ ոտքը յաղթուողին կրծոց վրայ դրած, ետեւ կը քաշուի, և իւր իրանին և բռնացած բազկաց բոլոր ուժովն կ՚երթայ զանիկայ ճզմելու: Գինւոյ պէս մութ գոյն մը իւր սպաննական գունովն ծիրանեգոյն կը ներկէ մկանաց հիւսուածները, փաթթուած լարերու յանկար-

ծական ցայտումը, գործունեայ մարմնոյն ուռեցքը և խոռոչները, և մարդասպանին անասնական դէմքն, կողմնակի լուսաւորուած կ՚ընկղմի սեւ հեռանկարի մը մէջ։



**Թանգարանք. — Եկեղեցիք. — Բոնիփակիոս. — Երէցն Պալմա. — Պ. Վերոնեզի. — Տինտորետտոյ. — Իւր բնաւորութիւնն և հանճարն. — Հրաշագործութիւն սրբոյն Մարկոսի. — Սուրբ Ռոքոսի դպրոցն. — Խաչելութիւնն. — Ամբողջական տպաւորութիւնն ։**

Ոչ քաջութիւն և ոչ ալ ազատ ժամանակ ունիմ խօսելու քեզ միւս նկարներուն վրայ ։ Ակադեմիոյ մէջ եօթն հարիւր պատկերք կան, որոց վրայ աւելցուր նաև եկեղեցեացն ։ Հատոր մը պէտք էր գրել. դարձեալ, յաճախ անոնց ըրած տպաւորութիւնն կը կայանայ մուժ մարմնոյ գոյնի մը քով գտնուող լուսաւոր մարմնոյ գոյնի մը մէջ, չէկ կամ կանաչորակ աստուեղինի մը գունոց աստիճանաբար նուազելուն մէջ ։ Խօսքերով կարելի է բացատրել զայն ընդհանուր կերպով. բայց գալով գունոց խառնըրդին՝ խօսքն չէ կարող բացատրել զայն ։ Միակ և լաւագոյն կերպն է՝ հոն գալ և անձամբ վայելել ։ Կու գայ մարդ, նորէն կու գայ, դարձեալ կը վերադառնայ յԱկադեմիա ։ Կ՚անց-

նի երկաթեայ կամրջէն՝ որ Վենետկոյ միակ արդի և ազեղ ձեռագործն է։ — Քսան սը-րահներու միոյն մէջ կը մտնէ դիպուածով, և կ՚ընտրէ իրեն քանի մը նկարիչներ՝ որոց հետ պիտի զբաղի կէսօրէն վերջը, զոր օրինակ Երէցն Պալմա և Բոնիփակիոս, որոյ գունոց խառնուածն Տիտիանոսինին պէս չափազանց սաստիկ և ճոխ է. սոքա մի և նոյն ցեղի բոյսեր են. բայց հասարակութեան աչքերն դարձած են փունջին դէպ ի բարձրագոյն ցօղունը։ Բոնիփակիոսի այս պատկերներէն մին հիանալի է, որ է՝ Խնճոյքն չար մեծատան։ Բաց կամարակապ սրահի մը ներքեւ, ընդ մէջ երակաւոր սեանց, նստեր են ճոխ և պերճասէր կանայք, ուսամերկ զգեստներով, սեւ թաւշեայ շրջազգեստներով, կարմիրակ ոսկեայ թեզանիքներով, կապոյտ և դեղնագոյն անհարթ կերպով նկարուած պարեգօտներով, չքնաղագեղ մարմիններ՝ թանձր իրանով, մսոտ մկանքներով, որք ի տես դրուած են յանդգնօրէն անարուեստ շռայլութեան մէջ ժապաւինազարդ պաստառներու՝ որոնք կ՚ընկնին իրենց կրկունքներուն վրայ ծանրաշարժ ծալքերով։ Սեւուկ մը, ընտանի փոքրիկ կենդանի, տեսակ մը կը բռնէ երա. ժըշտուհւոյն և նուագածուաց առջեւ, օղն կը

թնդայ ձայնով, և այս աղմկալից հանդէսը ամբողջացնելու համար՝ դուրսը կը տեսնուին պարտէզներ, ձիեր, բաղէարանք, բոլանդակ կամ կարասիք իշխանական պերճութեան։ Այս շքեղութեան մէջտեղ կը բազմի տէրն, կարմիր, արենագոյն և մութ թաւշեայ գրատի մը մէջ իբրև Հենրիկոս Ը մը, տխուր և անախորժ արտայայտութեամբ մը զգայասիրութեան՝ որ կշտապինդ կը յղփանայ առանց յագենալու։ Այս տեսակ հաճոյք ըղձեզ կը խորշեցնեն, զանոնք ըմբռնելու համար մենք չափազանց նրբացած և թոյլցած ենք. այսպիսի անհամեստ կանայք մեր վրան երկիւղ կ՚ազդեն. չափազանց կարճամիտ և մարմնասէր են. իրենց բազուկներն զմեզ գետին կը տապալեն, չափազանց խիստ նայուածք մ՚ունին։ Թանձր և սաստիկ հեշտասիրութիւնն վեշտասաններորդ դարուն մէջ միայն ախորժելի երևցաւ. այն ժամանակ կենդանւոյն վրայէն կ՚ընդօրինակուէր սաստիկ ցանկութեանց անյագութիւնը և զգայարանաց որկորստութիւնը. սակայն, միւս կողմանէն ալ, նոյնպէս վեշտասաններորդ դարու մէջ միայն կրցան նկարել կատարեալ գեղեցկութիւնը։ Դարձեալ կ՚անցնիմ երկաթեայ ոձեւ և կոշտ կամրջին վրայէն, և փողոցներու

բաւղի մը մէջէն յառաջ երթալով կը հասնիմ խորոտիկ Ս. Աստուածածնայ[1] եկեղեցին՝ դիտելու համար հոն Երէց Պալմային սրբուհի Վարվառէն ։ Սա սրբուհի մը չէ, այլ ծաղկափթիթ փափուկ օրիորդ մը, ամենէն աւելի հրապուրիչն և արժանին սիրոյ՝ զոր կարելի է երեւակայել ։ Ոտքի վրայ է, վեհ կերպով կեցած պսակ մը ճակատին վրայ., և անհոգութեամբ մէջքէն կապուած իր պարեգօտն նարնջագոյն ծիրանւոյն ծալքով կը ծածանի իր վերարկուին պայծառ շիկակարմրին վրայ ։ Հրաշալի թուխ մազերուն կրկին ալեձեւքն սահելով կ'իջնեն իր պարանոցին երկու կողմերէն ։ Իւր քնքոյշ ձեռքերն կը նմանին դիցուհւոյ մը ձեռաց. իր դէմքին կէսն ստուերի մէջ է, և աղօտ լոյսեր կը խաղան իր վերամբարձ ձեռաց վրայ ։ Իւր գեղանի աչկունքն ծիծաղկոտ են, իր փափկիկ և առոյգ շրթունքն կը ժպտին. վենետկեցի կանանց պէս գուարթ և ազնիւ է. լայն՝ բայց ո՛չ այնքան գիրուկ, հոգեղէն և բարեսէր, նա ստեղծուած կը թուի երջանկացնելու և երջանիկ լինելու համար ։

Այժմ մի կողմը թողունք միւս նկարնե֊

1. — S. Maria Formosa.

րը. սակայն ինչպիսի՜ կորուստ մ՚է Պ. Վերոնացւոյ Ակադեմիոյ մէջ ունեցած հինգ կամ վեց նկարքը զանց ընելն, այսինքն են՝ Խնջոյքն Ղեւեայ տան մէջ, իւր Առաքեալքն ամպոց վրայ, իւր Աւետումն, իւր կուսանքն, փայլփլուն և երփներանգ մարմարինէ իւր սեանց շարքերն, տարօրինակ կերպով նկարուած սեւաւ արաբական նկարներով իւր ոսկեայ որմախորշերն, իւր անհագին սանդուղներն, իւր վանդակասիւններն՝ կողմնակի նկարուած երկնից կապուտակին վրայ, իւր կարմրորակ և վագերաձիւ պէս ոսկեայ բծաւոր մետաքսներն, իրենց շիկակարմիր տապճակներուն ներքեւ ոստոստող իւր սպիտակ ձիերն, կարմիր և կանաչ ժապաւէններով զարդարուած իւր պահապան զինուորքն և խափշիկներն, օձապտոյտ ճիւղերով և փայլփլուն նկարներով աստղազարդուած իւր զառքաշներն, և ամեն բանէն աւելի իւր գլուխներուն հիանալի զանազանութիւնն և այն քաղցր ներդաշնակութիւնն՝ որ կը ծաւալի երաժշտութեան մը նման իւր արծաթազօծ գունոց խառնըրդէն, իւր պայծառափայլ դէմքերէն և իւր ընդարձակ զարդարանքներէն։ Եթէ Տիտիանոս դպրոցին թագաւորն և իշխեցողն է, Պ. Վերոնացին ալ անոր խնամապետն և

փոխարքայն է ։ Եթէ առաջինն հիմնայրաց զօրութիւնը և պարզ մեծութիւնն ունի , եր֊կրորդն ալ յայտնի և օրինաւոր միապետաց անդորրութիւնը և գեղեցիկ ժպիտն ունի ։ Իւր փնտռածը և գտածը չէ բնաւ վսեմն կամ դիւցազնականն , բռնութիւնն կամ սըր֊բութիւնն , կամ մեղկութիւնն . այս բոլոր հան֊գամանքներն մասամբ իւիք կը ցուցընեն բնու֊թիւնը , և կը յայտնեն յատկութիւն մը , ջանք մը , տկարութիւն մը կամ կոշտութիւն մը . այլ իւր սիրածն է ծաղկափթիթ գեղեցկութիւնն , բացուած ծաղիկն՝ բայց տակաւին թարմ , նոյն պահուն՝ յորում իւր վարդագոյն թեր֊թերն դեռ ամենուին չի թառամած բոլորն ալ բացուած ըլլան ։ Թուի թէ նա իւր ժա֊մանակակիցներուն պառնալով կ՚ըսէ . « Մենք ազնուական ստեղծուածներ ենք , վեհետկե֊ցիք և մեծամեծ տէարք , առանձնաշնորհ և գերազանց ցեղէ մը սերեալք , բնաւ բան մը չի պակսեցնենք կամ վերցնենք մեր վրայէն , հոգի , սիրտ և զգայութիւն , մեր մէջ ամենայն ինչ արժանի է երջանկութեան ։ Երջանկացնենք մեր բնազդմունքը և մար֊մինը , ինչպէս նաև մեր մտածութիւնը և մեր հոգին , և կեանքը հանդիսի մը դարձնենք՝ յորում երջանկութիւնն միայնայ գեղեցկու֊

թեան հետ ։ — Բայց Լուվրի մէջ կարելի է տեսնել իւր բազմաթիւ մեծամեծ ձեռագործները, և դու զինքը աւելի լաւ պիտի ճանչնաս իւր մէկ պատկերովը քան թէ իմ մէկ բանախօսութեամբս ։ Ընդ հակառակն, հանճարեղ մարդ մը կայ, Տինտորետտոյ, որուն գրեթէ ամբողջ ձեռագործքն Վենետկոյ մէջ են ։ Սակայն առանց հոս գալու անկարելի է նորա արժէքը ճանչնալ ։ Արդ որովհետեւ օր մը միայն ունիմ հոս, զայն ալ անոր հետ կ'ուզեմ անցընել ։

Իրմէ աւելի զօրաւոր և բեղմնաւոր միտք ունեցող արուեստագէտ եղած չէ երբէք աշխարհիս վրայ ։ Շատ մասամբ կը նմանի Միքայէլ Անգելոսին ։ Անոր կը մօտենայ վայրագ եղականութեամբն և կամաց ազդուութեամբն ։ Իւր ուսուցիչն Տիտիանոս՝ քանի մը օրէն վերջը՝ տեսնելով անոր շինած նախագծերը կը նախանձի անոր վրայ, կը տագնապի և դուրս կը հանէ իւր դպրոցէն ։ Սակայն նա մանուկ հասակին մէջ միտքը կը դնէ՝ որ ինքն իրեն սովրելով պիտի հասնի անոր ։ Ջեռք կը ձգէ հին ժամանակներու և Միքայէլ Անգելոսի ձեռօք շինուած գաճէ արձաններ, կ'երթայ կ'ընդօրինակէ Տիտիանոսին նկարները, մերկ մարմնոյ վրայէն կը գծագրէ, կ'անդամահա-

տէ, մոմէ և կաւիճէ կաղապարներ կը շինէ, զանոնք կը զգեստաւորէ, օդոյ մէջ կը կախէ, հեռանկարները կ'ուսումնասիրէ և կատարելութեամբ կ'աշխատի։ « Ուր որ նկարչական ձեռագործ մը կը շինուի, ինքն ներկայ է հոն », որոց շինուիլը միայն տեսնելով կը սորվի իր արուեստը։ Գլուխը կը տաքնայ, իր գաղափարք այնքան կը պաշարեն իր միտքը, որ ստիպուած անոնցմէ թեթեւնալու, կ'երթայ որմնադրաց հետ միասին միջնաբերդը և դէմքեր կը գծագրէ ժամացոյցին չորս կողմը։ Սակայն քիչ մը ժամանակ Սքիավոնէի հետ վարժուելով, այնուհետեւ ինք զինքը վարժապետ կը հռչակէ. « Իւր մտածութիւնք կ'եռան, Պարտիզի Տիրամօր եկեղեցւոյն կրօնաւորաց կ'առաջարկէ չորս վիթխարի պատկերներ շինել. Երկրպագութիւն ոսկեղէն հորթի, վերջին դատաստանն, բազմաթիւ հարիւրաւոր ոտնաչափ նկար, հազարաւոր անձինք, յորդառատ գեղում մի երեւակայութեան և հանճարոյ. զանոնք ձրի կը շինէ անոնց և իրենցմէ ուրիշ բան չուզեր բայց միայն իր ըրած ծախուց փոխարէնը, իրեն հարկաւոր են միայն հնարք և միջոց մը։ Ուրիշ օր մը, Սուրբ Ռոքոսի կրօնաւորք հինգ երեւելի նկարիչներէն նա-

խազծեր կ'ուզեն նկարի մը համար՝ զոր միաք ունէին շինել տալ, նա ծածուկ կերպով տեղւոյն չափերը առնել տալով՝ քանի մը օրուան մէջ պատկերը կը շինէ և կը տանի զայն անոնց՝ փոխանակ ծրագրի, և կ'ըսէ թէ՝ ձեզի կ'ընծայեմ զայս։ Այսքան չափազանց հնարագիտութեան և երագութեան վրայ ապշած կը մնան իւր մրցակիցք, և միշտ այս ոճով կ'աշխատի նա. կարծես թէ իւր հանճարն հրաբուխ մ'է միշտ լեցուն և ժայթքման մէջ։ Իւր ուղեղին անհամբեր, հրաբորբոք, զմայլեցուցիչ ցայտը հազիւ կրնան ընդունիլ քսան, քառասուն, եօթանասուն ոտք մեծութեամբ կըտաւներ, որոնք լի են բնականին չափ մեծ, գլխիվայր, դէզադէզ և օդոյ մէջ խոյացած կերպարանօք, լուսոյ ամենէն սաստիկ հեռանկարներով և ամենէն պայծառ արգասեօք։ Ասոնցմով կը ծածկէ ամբողջ եկեղեցիներ, որոց մէջ կը սպառէ իւր ամբողջ կեանքը՝ նման Միքայէլ Անգելոսին։ Իւր բնաւորութիւնն աշխարհիս վայրագ, բուռն և տարօրինակ հանճարներու բնաւորութեանց նման է, որոց զգացմանց ներքին մղումն այնքան ուժգին է՝ որ հաճոյքներն իրենց տաղտկալի կը թուին, որոնք իրենց արուեստին մէջ կը գտնեն միակ ապաստանի տեղը, և այնու

կը յագենան և կը հանդարտին ։ « Իւր մտածութեանց մէջ ընկղմած, հեռու բոլորովին ուրախութիւններէն », իւր ուսմամբք և աշխատութեամբ զբաղած կ'ապրի նա ։ Երբ կը դադրի նկարելէն, իւր տան ամենէն ներքին անկիւնը կը քաշուի, կ'ամփոփուի սենեկի մը մէջ, որ կը ստիպուի ցորեկ ատեն կանթեղ մը վառել լաւ տեսնելու համար ։ Ինքզինքը սթափելու համար հոն իւր կաղապարները կը շինէ, չի թողուր որ մէկը ներս մտնէ, և բնաւ մէկու մը առջեւ չի նկարեր՝ բաց ի իւր մտերիմներէն ։ « Իւր բոլոր ցանկութիւնն է փառքն », և մանաւանդ չափազանց փափաքն՝ ուրիշները գերազանցելու և կատարելութեան ծայրը հասնելու ։ Իւր խօսքն կարճ և բառերն խայթիչ են, իւր լուրջ և դաժան կերպարանքն ճիշդ պատկերն է իւր հոգւոյն [1] ։ Երբ խայթող խօսք մը բերնէն հանէ, իւր դէմքն կը մնայ անշարժ և անժպիտ ։ Առանց ուշ դնելու ուրիշ նկարչաց իրեն դէմ ունեցած նախանձուն և յայտնի թշնամութեան՝ քաջութեամբ և աշխուժութեամբ յառաջ կը տանի իւր գործը, և անվեհեր կը մնայ միշտ թէ՛ հասարակութեան և թէ հա-

1. — Տեսէք ինքն իրեն նկարած դէմքը ։

կառակ կարծիք ունեցող նկարչաց դիմաց։ Ատրճանակը ի ձեռին՝ ցուրտ հեգնութեամբ մը կը լռեցնէ լիրբ Արետինը։ Երբ իր բարեկամքն հրապարակաւ ի տես կը հանեն պատկեր մը, նա կը պատուիրէ իրենց որ անոնց քով կենան։ « Թողէք որ բոլոր նետերը արձըկեն, պէտք է որ մարդիկ վարժին ձեր մտածութեան »։ Որչափ որ քննէ մէկն անոր կեանքը և ձեռագործները, նոյնչափ աւելի կը նշմարէ ի նմա գունաւորիչ Միքայէլ Անգելոս մը, բայց ո՛չ անոր չափ ամփոփ և տէր անձին, և կարող իր գաղափարները ընտրելու մէջ, այլ բոլորովին անձնատուր իր բերման, և այնքան աշխոյժ՝ որ յանպատրաստից շինող մը կը դառնայ։

Այս պատճառաւ իսկ է, որ երբ իր գաղափարն արդարացի է կամ երբ նա զայն կ՚ընտրէ, չափազանց կերպով կը բարձրանայ։ Ըստ իս, ո՛չ մի նկար չի գերազանցեր և ցուցէ չի հաւասարիր Ակադեմիոյ մէջ գտնուող իր Սուրբ Մարկոսին. գոնէ իմ վրաս ո՛չ մի նկար այնքան տպաւորութիւն ըրած չէ։ Ընդարձակածաւալ նկար մ՚է այս, քսան ոտք երկայնութեամբ և լայնութեամբ, բնականին չափ մեծ յիսուն անձինքներով, սուրբ Մարկոս մթնցած կ՚երեւի պայծառութեան

մէջ, և գերի մը լուսաւորուած՝ մթագոյն անձնաւորութեանց մէջ: Սուրբը գերին տանջանքէն ազատելու համար երկնքէն կ'իջնէ՝ գլուխը դէպ ի առջեւ, գահավիժաբար օդոյ մէջ կախուած. իր գլուխն ստուերի մէջ և ոտքերն լուսոյ մէջ է. մարմինն տարօրինակ հեռանկարով մը կծկած, ոստամամբ մը կը խոյանայ կ'իջնէ արծուոյ մը ուժգնութեամբ: Բայց ի Ռուբէնսէն՝ ոչ ոք իրեն չափ ըմբռնած է շարժման վայրկենականութիւնը, թռիչի սաստկութիւնը. այս թափին և իրականութեան դիմաց, դասական դէմքերն պաղ բաներ կ'երեւին, որոնք ընդօրինակուած են Ակադեմիոյ կաղապարաց վրայէն, որոց թեւերն առասաններով բռնուած կապուած են: Մարդ կը յափշտակուի, անոր կը հետեւի մինչեւ գիտինը, ուր չէ հասած նա տակաւին: Հօն մերկ գերին, միւսին չափ հրաշալի հեռանկարով մը՝ դիտողին առջեւ կռնակին վրայ տարածուած, կը փայլփլի պայծառ իբրեւ կորընձնիոյ մը: Իր այրական և մկնեղ մարմինն կը բաբախէ: Սեաւ մօրուաց քով գտուող իր վարդագոյն այտերն ծիրանեգոյն ներկուած են կենաց ամենէն գեղեցիկ գունոց խառնուածովն: Կացիններն, երկաթ և փայտ, առանց կարենալու իր մարմնոյն դպչիլ՝ կտոր կտոր

եղած են, ամենքն ալ կը դիտեն։ Ապարօշով դահիճն՝ ձեռքերը վեր վերուցած՝ կը ցուցընէ իր կտրած կացինը այնպիսի զարմացած կերպով մը՝ որ զայն կը զայրացընէ։ Դատաւորն՝ վենետկեան կարմիր բաճկոնակ մը հագած՝ կիսով չափ վեր կ'ելնէ իր աթոռէն և իր մարմարեայ սանդուղէն։ Չորս կողմը, հանդիսատեսքն կը խոնարհին և կը խռնուին, ոմանք վեշտասաններորդ դարու զէնքերով, այլք հռովմէական կաշեայ զրահներով, ոմանք զառքաշներով և բարբարոսական փաթթոցներով, ուրիշներ վենետկեան շարփուշներով և դաղմատական պատմուճաններով, ոմանք ևս մերկ սրունքներով և բազուկներով, մին բոլորովին մերկ, վերարկու մը ազդրներուն և թաշկինակ մը գլխոյն վրայ, ստուերի և լուսոյ ամենէն պայծառ գծուածներով, անբացատրելի զանազանութեամբ, պայծառութեամբ և քաղցրութեամբ մը լուսոյ՝ որ կը ցոլանայ զինուց ողորկ սեւութեան վրայէն, կը ծաւալի մետաքսներու փայլուն ճիւղաձեւ զարդերուն վրայ, կը փակուի մարմնոյ ջերմ ստուերին մէջ, կը կենդանանայ ճոխ պաստառներու գծաւոր կարմիր, կանաչ, դեղին գոյներով։ Չկայ մէկն որ չի գործէ և չի գործէ բոլոր անձամբ.

չկայ իրենց տուեղէնին ծալք մը, իրենց մարմնոյն գոյն մը՝ որ բան մը չաւելցընէ ընդհանուր ոստման և շլացութեան վրայ։ Պատուանդանի մը դէմ կռթընած կին մը եւ կը քաշուի աւելի լաւ տեսնելու համար, նա այնպէս կենդանի է՝ որ բովանդակ իր մարմինն կը դողայ, աչքերն կը խօսին, բերանն գրեթէ կը բացուի։ Դէպ ի խորը, ճարտարապետութիւնք, բարձրաւանդակ ճեմելեաց կամ սեանց վրայ մագլցող մարդիկ կ'աւելցընեն միջոցի լայնութիւնը և կը ճոխացնեն տեսարանը։ Շունչ կ'առնուս, և շնչած օդդ աւելի սաստիկ է հոն քան այլուր. հանճարեղ մարդուն չափահաս և կատարեալ ըղեղին մէջ փայլատակմամբ ցայտած կենաց բոցն է այդ. ամենայն ինչ կը դողդղայ հոս և կը բաբախի լուսոյ և գեղեցկութեան զուարթութեան մէջ։ Չկայ օրինակ մը այսպիսի շռայլութեան և այսպիսի գիւտի յաջողութեան. պէտք է աչօք տեսնել նախագծի կանոնէ դուրս ազատութիւնը և յաջողակութիւնը, կազմուածքի և յատկութեան բնական թռիչը, ինքնաբերական կենդանի ստեղծումն, առանց ուշ դնելու կանոններով՝ վայրկենի մը մէջ իր գաղափարը բացատրելու հաճոյքն և պէտքն, ապահով և յանկարծական ոստումն բնազդ-

ման՝ որ իսկոյն և առանց ճգանց կատարեալ գործ մը յառաջ կը բերէ, ինչպէս թռչունն կը թռչի և ձին կը վազէ։ Գերագոյն վայրկենի մը մէջ այս հանճարոյս մէջ լեցուեր և միաբաններ են ամեն տեսակ կեցուածք, կերպարանք և տարազք՝ հանդերձ իրենց տարօրինակ և անհաւասար հանգամանքներով։ Կնոջ մը ծռած թիկունքն, լուսեղէն վահանակով զարդարուած գլուխ մը, թափանցիկ ստուերի մէջ ծանրաշարժ մերկ մարմին մը, վարդագոյն մարմին մը՝ ուր սաթագոյն մորթին ներքեւ արիւնն կը բարեխառնի, գալարուն վերարկուի մը սաստիկ կարմիր գոյնն, գլուխներու, սրունքներու և բազուկներու խառնաշփոթութիւնն, ցոլացումն գունոց՝ որք փոխադարձ լուսաւորութեամբ մը կը փայլփլին և կը փոփոխուին, այս ամենն կը գեղանի միանգամայն, ինչպէս հոսանք մը ջրոյ՝ որ կը ցայտի սաստիկ լեցուն խողովակէ մը։ Ցանկարծական և կատարեալ ամփոփմունք՝ են նոյն ինքն ներշնչութիւնն, և գուցէ աշխարհիս վրայ չկայ քան զայս աւելի կենդանի և ճոխ ներշնչութիւն մը։

Մարդկային երեւակայութեան գաղափարը չէ կարելի ունենալ՝ առանց նախ տեսնելու զայն։ Զանց կ՚ընեմ նկարագրել Ակադեմիոյ

մէջ գտնուող ուրիշ տասը նկարներ, Սրբուհի Ագնէս մը, Քրիստոսի յարութիւն մը, Աբելի մահ մը, Եւա մը, զօրաւոր և փառաւոր զգայական մարմին կոշտ շրջագծերով, մարմնեղ, ծալ ի ծալ սրունքներով, անսանոյ և առանց արտայայտութեան գլխով մը, բայց ծաղկափթիթ և կենդանի, այնպիսի զուարթ և սաստիկ անպորրութեամբ մը, այնպէս ճոխ մարմարակերպ նկարուած լոյսերով և ստուերներով, որ աւելի հոս՝ քան թէ նոյն իսկ Ռուբէնսի ձեռագործաց մէջ՝ կը զգացուի մերկութեան և մարմնոյ բովանդակ բանաստեղծութիւնը։ Զինքը ճանչնալու համար պէտք է երթալ եկեղեցիները և հասարակաց յիշատակավայրերը, որոց գրեթէ ամենուն մէջ կը գտնուին իր ահագին նկարները, վերափոխումն մը առ Յիսուսեանս, խաչելութիւն մը և չի գիտեմ ուրիշ քանի նկարներ ի Սուրբն Յովհաննէս և Պաւղոս, Հարսանիքն Կանայ ի Փրկագործ Աստուածածին, չորս մխիթարի նկարներ Պարտիզի Տիրամօր եկեղեցւոյն մէջ, Քառասուն Մարտիրոսքն, Մանանայն, Յարութիւնն, Ընթրիքըն, Մարտիրոսութիւն սրբոյն Ստեփանոսի ի Սուրբն Գէորգ, քսան նկարք և ձեղունք, Արքայութեան նկար մը քսանու-

երեք ոտք բարձրութեամբ և եօթանասուն երկայնութեամբ՝ դքսական պալատին մէջ, — հուսկ ապա սուրբ Ռոքոսի եկեղեցւոյն և դպրոցին մէջ, որոնք իրեն իբրև յատուկ թանգարանն են, քառասուն նկարք կան՝ յորոց ոմանք այնքան հսկայական են, որ կրնան միանգամայն ծածկել Լուվրի թանգարանին երկու քառակուսի դահլիճները։ Ստուգիւ ճանչցուած չէ նա Եւրոպիոյ մէջ։ իւր ձեռագործներէն գրեթէ բնաւ չեն գըտնուիր անդրալեռնեան թանգարանաց մէջ. անոնց մէջ գտնուած պատկերքն եւս փոքր կամ աննշան բաներ են։ Բաց ի դքսական պալատին երեք կամ չորս տեսարաններէն, միւսներն լաւ չեն փորագրուած. Աւգոստինոս Կարաչչեայ ձեռամբ օրինակուած խաչելութենէ մը զատ, իւր մեծամեծ ձեռագործքն ամենեւին չեն փորագրուած։ Ամեն բանի մէջ չափազանց է նա, թէ՛ տարածութեանց և թէ մտածութեան մէջ։ Վեշտասաներորդ դարու վերջը ակադեմական հանճարներն զինքը անուանարկ ըրին իբրև ծայրայեղ և անհոգ. իւր հանճարոյն զարմանալի գերմարդկային լինելն կը վիրաւորէ սովորական կամ չափաւոր հոգւոց անձնասիրութիւնը։ Սակայն ստոյգն այն է, որ այսպիսի մարդ մը ոչ ե-

րեւցեր է ցարդ և ոչ ալ պիտի երեւի, նա միակ է իւր տեսակին մէջ, ինչպէս Միքայէլ Անգեղոս, Ռուբէնս, Տիտիանոս ։ Թո՛ղ կոչեն վինքը տարօրինակ, զայրացկոտ, յանպատրաստից շինող, թո՛ղ մրմռան իւր գունոց խառնըրդին սեւութեանց, իւր դէմքերուն խառնափնդորութեանց, իւր խմբերուն խառնաշփոթութեանց, իւր վրձինին արագութեան, աշխատութեան և եղանակին դէմ՝ որք երբեմն գործածուած մետաղ մը կը մոցընեն իւր նոր ձուլման մէջ. թո՛ղ մեղադրեն իւր յատկութեանց բոլոր թերութիւնքը, չեմ հակառակիր այդ բանին. բայց աշխարհիս վրայ բնաւ տեսնուած չէ այսպիսի հրաբորբոք, այսպիսի յորդայեղց հնոց մի, բոցերու այսպիսի ցայտմամբք և այսպիսի շառաչմամբք, կայծերու այսպիսի բարձր ոլացմամբ մը, այսպիսի յանկարծական և բազմապատիկ փայլմամբք, այսպիսի յարատեւ շողշողմամբ մը աներեւակայելի ծուխերու և լոյսերու ։

Յիրաւի չեմ գիտեր, թէ ի՛նչպէս խօսիմ անոր վրայ. անկարելի է ինձ նկարագրել իւր նկարները, որոնք թէ՛ չափազանց ընդարձակ են և թէ բազմաթիւք ։ Իւր հոգւոյ ներքին թռիչը միայն պէտք է նկարագրել. ինձ կը թուի թէ միակ հանգամանք մը կը գտնուի

անոր մէջ՝ այսինքն է ներշնչութեան շանթահարութիւնն ։ Ահաւասիկ մեծ բառ մը , սակայն կը համապատասխանէ այն ճշգրիտ և որոշ դիպաց՝ յորոց կարելի է օրինակներ մէջ բերել ։ Մերթ վերջին վայրկեաններու մէջ , մեծ վտանգի մ՚առջեւ , յանկարծական ցնցման մը մէջ , մարդս որոշակի կը տեսնէ զարհուրելի սաստկութեամբ իւր կենաց տարիները , ամբողջական դաշտանկարներ և տեսարաններ , երբեմն մաս մը երեւակայական աշխարհի . շնչհեղձութեանց յիշատակները , խեղդուող մարդկանց պատմութիւնքը , անձնասպաններու և ափիոն ծխողաց[1] մտերմութիւնքը , հնդիկ սրբազան երգերն[2] կը հաստատեն զայս ։ Ուղեղի գործունեայ կարողութիւնն յանկարծակի տասնապատկուելով և հարիւրապատկուելով աւելի կը կենդանացընէ միտքը այս վայրկենական հեռանկարին՝ քան իւր բոլոր կենաց մէջ ։ Ցիրաւի , այս վսեմ բանդագուշանքէն սովորաբար նա տկարացած և հիւանդացած դուրս կ՚ելնէ . բայց երբ կազմուածն այնչափ ուժով է որ առանց խանգարուելու կարենայ դիմանալ այս ե-

1. Confessions of an opium-eater, դրութիւն կէնսէյի ։
2. Pouranas.

լեկտրական բաղխման դէմ, այն ժամանակ մարդ գերմարդկային գործողութիւններ կը կատարէ, ինչպէս են նշանաւոր տեսանողք։ Ահաւասիկ այս կերպով մտած է ստեղծիչ երեւակայութիւնն մեծամեծ արուեստաւորներու ձեռագործաց մէջ. այս բանս՝ ինչպէս ամենէն աւելի մեծամեծաց՝ նոյնպէս և Տինտորետտոյի ձեռագործաց մէջ շատ սաստիկ է, նուազ հակակշիռներով։ Եթէ լաւ ըմբռնուի այս ակամայ և տարօրինակ հանգամանքս իրենին նման ողբերգական խառնուածի մը մէջ, և գունաւորչի զգայութեանց վրայ՝ ինչպէս են իրեններն, անկէ յառաջ պիտի գայ նաև միւս բոլորն։

Նա չընտրեր, իր տեսիլն կ'ազդէ՝ կը տիրանայ վրան. երեւակայական տեսարան մը իբրեւ իրական կը թուի իրեն. եռանդեամբ մը, վայրկենի մէջ կ'ընդօրինակէ զայն հանդերձ իր այլանդակութեամբք, իր անկարծելիութեամբ, իր ահագնութեամբ, իր եռացմամբ. բնութենէն մաս մը կ'առնու և կը փոխադրէ զայն կտաւի վրայ, և ահա յանկարծականութեամբ և զօրութեամբ այս ինքնաբերական արտադրութեան, որ բնաւ ուշ չի դներ յարմարութեանց և վստահաբար կը գործէ։ Երկու կամ երեք անձնաւորու-

թիւնք չեն իւր նկարածը, այլ տեսարան մը, կենաց մաս մը, ամբողջ դաշտանկար և բազմամբոխ ճարտարապետութիւն մը։ Իւր Հարսանիք Կանայի նկարին մէջ կը տեսնուի ամբողջ ահագին սեղանատուն մը, ձեղուանք, պատուհանք, դրունք, տախտակամածք, սպասաւորք, սեղանադրութեան կազմածք, խոր ընկած սեղանոյն շուրջը երկու կարգերու վրայ շարուած են ամբողջ բազմականք, արք մէկ կողմը, կանայք՝ միւսը, այնպէս որ երկու շարք գլուխներ միայն կը տեսնուին, նման ծառուղւոյ երկու կարգ ծառերու, իսկ ամենէն ծայրը Քրիստոս, որ բազմութեան և հեռաւորութեան պատճառաւ բոլորովին փոքրկացած և հազիւ թէ կը տեսնուի։ Սուրբ Ռոքոսի դպրոցին մէջ գտնուող իւր Պրոբատիկէ աւազանն հիւանդանոց մ'է. կիսամերկ կանայք տարածուած սաւանի մը վրայ՝ որք անկողնէն կ'ելնեն, ոմանք ալ մերկ սրունքներով և ոտինքներով, մին տաշտի մը մէջ, բոլորովին մերկացած, և Քրիստոս ալ ջերմերու և հինցած վիրաց մէջտեղը կեցած։ Իւր Մանանային անապատի մէջ ժողովրդեան բանակադրութիւն մ'է, կենաց ամեն պատահարներով, դաշտանկարի բոլոր զանազանութեամբք, անսահման հեռաւորու-

թեանց բովանդակ մեծութեամբք. հոս՝ ուղտ մը իւր ուղտապանով ի միասին, հոն՝ սեղանի մը քով թակով մարդ մը, այլուր երկու լուացուող կանայք, ուրիշ ծաղկահասակ ուշադիր կին մ'ալ կը ծռի կողով մը կարգի գնելու համար, կան ալ որ նստած են ծառի մը քով, ոմանք ալ կարժառ կը դարձընեն կամ կտաւներ կը պատրաստեն մանանայն ժողվելու համար, ասուեղինազգեստ ծերունի մ'ալ կը խորհրդակցի Մովսիսի հետ: իւր ծայրայեղութեամբք և իւր հանճարովն սա իւր պարէն անդին կ'անցնի և կու գայ կը միանայ մերինին հետ: Իւր նկարքն պատկերազարդութիւնք կ'երևին. այս տարբերութեամբ՝ որ նա քառասուն ոտք երկայնութեան վրայ կը յօրինէ բնականին չափ մեծ անձինքներով, իսկ մենք կը ջանանք շինել մէկ ոտք երկայնութեան վրայ մատնաչափ երկայն անձինքներով: Զինքը գրաւողն է աւելի իրաց ընդհանուր կեանքն քան թէ մարմնոյ մը մասնական կեանքն. նկարչական և ստեղծական կանոններէն դուրս կ'ելնէ, անձնաւորութիւնը կ'ենթարկէ ամբողջութեան և մասունքը արգասեաց: Իւր արտադրելիքն՝ այս ինչ կանգուն կամ պառկած մարդը չէ, այլ բնութեան կամ պատմութեան վայրկեան

մը։ Գրաւուած է, իբրեւ արտաքուստ. կը կրէ պատկեր մը որ զինքը կը գրաւէ և չի զատուիր և որուն անձնատուր կ'ըլլայ։

Այս պատճառաւ իսկ իր եզականութիւնն արտաքոյ կարգի է։ Իրեն համեմատութեամբ բոլոր միւս նկարիչք իրարու ընդօրինակող են. իւր նկարներուն առջեւ միշտ կը զարմանայ մարդ, կը հարցնէ ինքն իրեն, թէ ուստի՞ գտեր է զայս, ո՞ր անծանօթ, երեւակայական՝ բայց սակայն իրական աշխարհին մէջ։ Իւր Ընթրիք նկարին մէջ գլխաւոր անձնաւորութիւնն է փառաւոր աղախին մը ծնրադիր, գլուխը ստուերի և ուսն լուսոյ մէջ. բակլաներու ափսէ մը բռնած է և պընակներ կը բերէ. կատու մը կ'ուզէ մագլելով ելնել իր կողովին վրայ։ Զորս կողմը կան ղարաններ, ծառաներ, ջրոյ անօթներ, և աշակերտքն ուղղահայեաց կարգով շարուած են երկայն սեղանի մը շուրջը։ Ընթրիք մ'է այս, ստուգիւ երեկոյեան կերակուր մը. ահաւասիկ իրեն համար էական գաղափարն։ Սեղանոյն վերեւ կը փայլփլի լապտեր մը, և գլուխներուն վրայ կ'իջնէ կապուտկեկ լուսնի լոյս մը. բայց գերբնականն կը մտնէ ամեն մասանց մէջ. դէպ ի խորը երկնից միջէն երեւցող նեղ տեսարանով և լուսափայլ հրեշ-

տակաց պատով մը, աջակողմը, խմբով մը ածգոյն հրեշտակաց՝ որք կը պտուտկին գիշերային ստուերին մէջ: Զափազանց հաւանականութեան յանդգնութեամբ և զօրութեամբ մը՝ երկու աշխարհներն, աստուածայինն և մարդկային, իրարու հետ թափանցելով մէկ կ՚ըլլան: Այս մարդս աւետարանին մէջ կարդալով գիտական բառը, զայն տխպուած կը նկատէր իբրև մարմնաւոր իր մը իւր բոլոր յատուկ մանրամասնութեամբք և ի հարկէ տխպեալ զանոնք կ՚արտադրէր: Սուրբ Յովսէփ հիւս էր. Աւետումը նկարելու համար՝ իսկոյն ճիշդ հիւսան տուն մը կը ներկայացնէ, դուրսը ծածկարան մը՝ բացօթեայ աշխատելու համար, գործաւեղանի մը դէզ դէզ առարկայքը, տաղձի և հիւսնութեան փայտեր խառնիխուռն, դիզուած, կարգադրուած, պատին կռթնցուցած, սղոցներ, խարաբուզներ, չուաններ, և արուեստաւորն իւր գործին վրայ. ներսը խոշոր անկողին մը կարմիր վարագոյրներով, հինցած աթոռ մը, տղու օրրոց մը ոզորիէ, կինն կարմիր շըրջազգեստիկի մը մէջ, կոռովի ժողովրդական կին մը, տպշած և զարհուրած: Փլանդրիացի մը քան զայս աւելի ճիշդ չէր կարող ընդօրինակել ժողովրդական կենաց խառնափըն-

զօրութիւնը և ռամկութիւնը ։ Սակայն եռանդ-
նալիր ուժինն անբաժան է միշտ այս ման-
րամասն ցուցուած և սաստիկ տեսիլներէն ։
Գաբրիէլ՝ պտուտկող և աղմկալից հրեշտա-
կաց խմբով մը, կը խոյանայ կ'իջնէ դրան
և պատուհանի միջէն. Թերակատար տունն
կարծես կործաներ է իրենց բախմանէն. ար-
շաւանքի մը սաստկութիւնն է այս. աղաւ-
նիք ճիշդ այսպէս արագաթռիչ կը մտնեն
աղաւնոցը. Նոքա բոլորը խմբովին կը դիմեն
դէպ ի առ սուրբ կոյսն ։ Այս անհամեմատ
և աննման շարժումէն, դատեցէք այն ան-
դիմադրելի յարձակումը՝ որ շառաչուն գա-
ղափարներն կը յարձակին իւր հոգւոյն մէջ ։
Ոչ մի նկարիչ այսքան սիրած, զգացած և
արտադրած չէ շարժում մը ։ Բոլոր իւր անձ-
նաւորութիւնք խառնխուռն կը շրջին և կը
խոյանան ։ Յարութիւն մ'ունի, յորում ոչ
մէկն հաւասարակշռութեան մէջ է. հրեշտակք
կը հանին վերէն, իրենց գլուխն առջեւէն.
Քրիստոս և սուրբք կը լուղան օդոյ մէջ. ըստ
իրեն մթնոլորտն կարծր և շօշափելի հեղուկ
մ'է որ կը բռնէ մարմինները և իրենց թոյլ
կու տայ բոլոր կեցուածքները, ինչպէս ջուրն՝
ձկանց ։ Երբ նա սաստիկ տեսարան մը կը
նկարէ՝ ինչպէս Պղնձէ օձն կամ Կոտորածն

ամէն մանկանց, բոլորովին եռանդ մ'է այն ։ Կանայք ամբողջ ձեռքով կը բռնեն դահճաց սուրերը, գահավիժելով կը գլորտկին բարձրաւանդակի մը վրայէն, կը սեղմեն իրենց մանկունքը իրենց կրծոց վրայ կենդանական գրկախառնութեամբ մը, անոնց վրայ կ'ընկնին՝ ծածկելով զանոնք իրենց մարմնովը ։ Հինգ կամ վեց դիզուած մարմինք մարմնոց վրայ, կանայք և մանկունք, վիրաւորեալք, հոգեվարք, կենդանիք, կոյտ մը կը կազմեն ։ Միջոցն ծածկուած է խառնակոյտով մը գլուխներու, անդամներու, իրաններու՝ որք կ'ընկնին, կը վազեն, կը զարնուին և կ'երերան՝ ինչպէս գինով մարդկանց ամբոխ մը. յուսահատութեան մոլեգին խառնակութիւնն է այս ։ — Անոր մօտ, լերան զառ ի վեր կողին վրայ, շանագլուխ օձեր աւերածներ կը գործեն դիզուած և ընկած մարդիկներու հրէշաւոր խառնակութեան մը մէջ ։ Մին՝ արդէն սեւցած, կը մեռնի ոռնալով, կ'ընկնի կռնակին վրայ, անդամքն թոյնէն ուռած, մկանքն ջղաձգութիւններէն խախտուած, կուրծքն դուրս ելած և տնկուած, գլուխն ետեւի կողմը նետուած. օրհասականք կը թուլնան և կը տապլտկին, ոմանք կողմնակի, ուրիշներն ոտքի վրայ, պրկուած, գլխիվայր, այլք վեր ոլորուած ազ-

դլըներով և դէպ ի ետեւ գալարուած բազուկնե-
րով, ամենքն յուղարկաւորութեան ստուերնե-
րով զարնուած տժգոյն պայծառութեանց ներքեւ,
ամենքն կը թուալին և կը տապալին՝ իբրեւ
մարդկային ձիւնակոյտ մը գահավիժի զառի-
վայրին վրայ։ Արուեստաւորն իւր իշխանու-
թեան մէջ է, շքեղաբար կը ճեմի նա ան-
կարելւոյն մէջ։ Շատ բան միանգամայն կը
տեսնէ, քառասուն, վաթսուն, ութսուն անձ-
նաւորութիւններ և իրենց շրջակայքը, վեր
բարձրացած, խառնուած, սեղմուած, լոյսերու
և սեւութեանց ողբերգութեան մը մէջ։ Եթէ
դիտենք Սուրբ Ռոքոսի եկեղեցւոյն մէջ գըտ-
նուող իւր երկրորդ Պրոբատիկէ աւազանը.
անոր մէջ ամենևին ո՛չ երկինք և ոչ նկարի
խորութիւն կայ. բաց ի տանիքէ մը և յո-
նիական սեանց չորս ձողերէն՝ ամենայն
ինչ մարմին է և մարմնոյ կոյտք, մերկ թի-
կունք և կուրծք, գլուխք, մօրուքներ, վե-
րարկուներ և ճերմակեղէնք, հրէշային և տա-
րածուող խառնակութիւն մը արանց և կա-
նանց՝ որք գետին ընկած իրարու վրայ յե-
ցած՝ կը տարածեն իրենց բազուկները առ
փրկիչն Քրիստոս։ Կռնակին վրայ պառկած
կին մը դէպ ի անոր կը դարձընէ աչքերը
իրմէն օգնութիւն խնդրելու համար։ Օրհա-

տականի անհագին իրան մը կը ծռի և կ'ընկնի տուեղինազգետներու կոյտի մը վրայ վերջին ճգամբ մը բժշկուելու համար։ Աստ և անդ կը տեսնուին լուսոյ միջէն վեր ելնող գեղեցկադէմ աղերսագոչ կանայք, ճաղատ գանկերով հին զինուորներ, մկնեղ կուրծքեր և անհագին մօրուքներ՝ ինչպէս են շահապետացն։ Աջեւի կողմը, հսկայաձեւ ծառայ մը, տեսակ մը բեռնակիր և ըմբիշ, կը պրկէ իւր ազդրները և կը հաստատուի իւր երիկամանց վրայ՝ կրելու համար դէզ մը ճերմակեղէններ։ Ուրիշ մը, ծերացած հսկայ մը, գրեթէ մերկ, նստած է սեան մը· դիմաց, իւր սրունքներն կախուած են, համակամեալ է նա իբրեւ հին բնակիչ մը հիւանդանոցի. իւր կարմիր և կճկուղ մորթն կը խորշոմի մկանքներուն ամբողջ ծամածռութեամբք. տարիներով ապրեր է, և դեռ շատ կրնայ ապրիլ. դէմքն օդոյ մէջ կ'երազէ, զգալով իւր հինցած արիւնը տաքցընող արեւը։ — Իրականին և վիթխարիին այս ճաշակովը, ստուերի և լուսոյ այս սաստիկ հակապատկերներով, զինքը մինչեւ իւր գաղափարին ծայրը հասցընող այն եռանդեամբ, ամբողջ իւր գաղափարը արտայայտող այն յանդգնութեամբ, նա նկարիչներու ամենէն

Թատերականն է։ Դըլակրուա պէտք էր հաս
գալ, պիտի գտնէր այս տեղ իր նախնիք-
ներէն մին, որ իրեն պէս կը զգայր խիստ
ճշմարտութիւնը, անսանձ կիրքը, ամբողջու-
թեան արգասիքները, իր ձեռքով, և մարմ-
նաւոր մեծութեան աւելի ընդարձակ զգաց-
ման մը մէջ սնած աւելի նկարչական դարու
մը միջոցաւ։ Դըլակրուայի ոչ մէկ նկարն
այնքան ազդու տպաւորութիւն չըներ ինչպէս
Սուրբ Սուլպիս կաչաղակուրաց մէջ։ Սոքա
ընդարձակ մութ ներքին բանտի մը մէջ են,
տեսակ մը հին ստորերկրեայ զնդան, ուր
երկաթեայ անուրներով, պրկուած շղթաններով
կը ճզմեն և կը խախտեն անդամները դան-
դաղ և երկարատեւ տանջանօք։ Սուրբն կ'ե-
րեւի. պարանոցէն կապուած թշուառ մը դէպ
ի անոր կը բարձրացնէ իր գալարուն գլուխը.
ուրիշ մը, վանդակապատ խուցի մը խորէն,
պատուհանի ձողերուն կը մօտեցնէ իր դէմ-
քը։ Գերեզմանական մթութեան մը մէջ
կ'երեւին կարմրորակ և մկանքներով ակօսուած
ողնայարներ, ժանգագոյն կուրծքեր, տախ-
ծուց բաշերու նման շիկագոյն գլուխներ,
պայծառ սպիտակ մօրուքներ. բայց աւելի
վերը, ստուերի ածխային սեւութեանց մէջ,
կը ծածանին սիրուն դէմքեր, արծաթագօծ

մետաքսեայ պարեգօտներ, ոժգոյն մանիշա-կեայ պատմուճանք, ճառագայթաւէտ դեղ-նագոյն մազեր. այցելութիւն մ'է այս հրեշ-տակային դասու մը։

Եկեղեցին և դպրոցի կրկին դատխկանները աչքէ անցընելէդ յետոյ, դեռ մեծ սրահ մ'ալ կը մնայ այցելելու, պանթէոնն. որմեր և ձեղուններ, զորս նոյնպէս նկարներով պարդարած է Տինտորեթտոյ։ Ի զուր է զինքը ձանձրացած կոչել, ամբաստանել իբրև չա-փազանց և ծայրայեղ նկարիչ, ըսել, թէ այս քառասուն ահագին նկարք շատ շտապով շինուած են, և մանաւանդ աւելի որոշուած քան թէ շինուած, և թէ նա անգրագոյն կ'անցնի հանդիսատեսին և իւր ոյժերէն։ Ներս կը մտնես, և դարձեալ ոյժեր կը տես-նես, վասն զի առանց ուզելուդ նա զանոնք քեզի կ'ընծայէ։ Կոյսեր, կանայք խառնի-խուռն կը լողան ձեղունի խորշերուն մէջ, և իրենց չափազանց գեղեցկութիւնն, սատաւ-րաթաթաւ մարմնոյ շքեղ բոլորակութիւնքն կը տեսնուին գունոյ անքացատրելի ճոխու-թիւններով։ Լերան մը դարձուածքի զառի-վերին վրայ կ'երեւի Խաչաբարձութիւն մը. Քրիստոս, չուանը վզին, առջեւ քաշուած է, և անգութ թափօրն ապառաժներէն վեր

կ'ելնէ Ռուբէնսի[1] չարչարանքի մը ցաւագին և սաստիկ ոստմամբ։ Միւս կողմը, խեղճ Քրիստոս կանգուն կեցած է Պիղատոսին առջեւ, և զինքը բոլորովին ծածկող սպիտակ երկայն պատանքն տխուր գոյնով մը կը տարածուի ճարտարապետութեան մթին ստուերաց և ընթերակայից հագուած արենագոյն ծիրանւոյն վրայ։ Դրան վերեւ, կարմրորակ դիակ մը ընկած մնացած է՝ փայտացած զինուորաց և դատաւորաց անհագին կարմրազգեստուց մէջ։ Բայց ասոնք դեռ լոկ հանդերձանք են։ Դահլճի ամբողջ մաս մը, որ է քառասուն ոտք երկայնութեամբ և համեմատական բարձրութեամբ պատ մը, կ'անհետանայ խաչելութեան մը ներքեւ, մէկ հատին մէջ տասը տեսարանք կան, որք միանալով մէկ հատ միայն կը կազմեն, ութսուն անձնաւորութիւնք իրարմէ հեռու և խմբուած, լեռան մը ստորոտը, ուռոյց ուռոյց եղած սարահարթ մը, ծառեր, աշտարակներ, կամուրջ մը, ձիաւորներ, քարոտ գագաթներ, հեռուն թխորակ անսահման հորիզոն մը։ Ոչ մէկ աչք պարունակած չէ այսպիսի ամբողջութիւններ, և իրարու հետ յարմարցուցած

1. — Մի և նոյն տեսարանն կը գտնուի նաև Բրիւքսելի թանգարանին մէջ, Ռուբէնսի ձեռքով չինուած։

նմանօրինակ արգասիքներ ։ — Ճիշդ մէջ-տեղը , գամուած է Քրիստոս կանգնուած խաչին վրայ , և իւր մթին գլուխը կը ծռէ իւր պսակին շիկագոյն ճառագայթման մէջ ։ Սանդուղ մը կայ իւր ցիցին ետեւի կողմը , դահիճք մագլելով վեր կ՚ելնեն , սպունգը ի-րարու տալով ։ Խաչին ստորոտը , աշակերտք , կանայք , կանգուն կեցած , թեւերնին բա-ցած , ծնրադիր , կը գոչեն և կ՚ողբան , սուրբ Կոյսն կը մարի , իսկ նուաղեալ , դողդոջուն , ընկած կանանց բոլոր այն մարմիններն՝ կարմրորակ , վարդագոյն , չէկ , կապուտկեկ ահագին ասուեղինազգեստուց ներքեւ , արե-ւու փայլմամբ մը այտի մը վրայ , ծնօտի մը վրայ , կը կազմեն յուղարկաւորութեան ա-մենէն փառաւոր հանդէսը ։ — Ինչպէս շքեղ ներդաշնակութիւն մը որ կը միաձայնէ սը-րահնչիւն և ուժեղ երգ մը , այսպէս նաև շրջակայ ամբոխն և տեսարանք կը միաբանին գլխաւոր տեսարանին հետ իրենց զանազա-նութեամբ և իրենց ողբերգական շքեղու-թեամբ ։ — Ջախակողմը , երկու աւազակ-ներէն մին արդէն կապուած է իւր խաչին վրայ , զոր և վեր կը բարձրացնեն . իւր մարմնոյն վերի մասն կը փայլփլի լուսոյ մէջ , մնացածն ստուերի մէջ ։ Հինգ կամ վեց գա-

հինգ կը պրկեն հաստ չուանները և կը բռնեն ռանդղոց երկու կողմի հաստ փայտերը, կը քաշեն և կը խթեն պրկուած մկնային կազմուածոյն ամենայն ուժով և ճգամբ ։ Լոյսն կը կտրէ կ'անցնի իրենց վարդագոյն և գըծաւոր տառատոկերու, իրենց թուխ պարանոցաց ջղերուն, իրենց ճակատին ուռած երակաց միջէն ։ Հոն են իրենց գործիքներն, կացիններ, մուրճեր, զամեր, մեծղի սանդուղ մը, և խաչին գլուխը, գեղեցիկ լուսաւոր ստուերի մը մէջ, անտարբեր հետաքրքիր մը իւր ձիոյն վրայէն ծռած կը նայի ։
— Միւս կողմը, հաւասար պայծառութեամբ և զանազանութեամբ մը, յերեւան կու գայ երրորդ տանջանքը, ինչպէս խմբերգ մի որ կը համապատասխանէ ուրիշ խմբերգի մը ։ Խաչն գետնի վրայ է. ուր կը կապուի մահապարտն. դահիճ մը չուաններ կը բերէ. ուրիշ ըմբիշ և գոռոզ մէկն, իւր գալարուն ուսը ուռեցնելով՝ գայլիկոն մը կը դարձընէ խաչի թեւին մէջ. սարահարթին ստորոտը նստած է սիրող ծերունի մը. տեսարանն կը գրաւէ զանիկայ, կը ծռի կէս մը տարածուած իւր կարմիր պարեգօտին մէջ, և անոր քով կայ երկաթագոյն գորշ ձիու մը վրայ, գըլխարկաւոր սրիկայի կերպարանքով մէկը, բո-

լոռալին լուսաւորուած , . . . ։ — Բաց ի այս երեք տեսարաններէն , հինգ կամ վեց յատակաց վրայ աստիճանաբար կը թուալի՝ գոյներու և ձևերու անթիւ զանազանութեամբք ամբոխի փառաւոր և շքե՜ղ ներդաշնակութիւնն , ամեն տեսակ ընթերակայք , երկրորդական փոքրիկ տեսարանք , պատմաւորաց գերեզմանը փորող վիաթանգք , նետաձիգ զինուորներ , որք՝ փոսի մը մէջ , վիճակ կը ձգեն պատմուճաններու վրայ , մեծամեծ պարեգօտներով քահանայք , զրահաւոր զինամարտիկք , լրբօրէն հագուած և ամփոփուած ձիաւորք , հրէական զառքաշներ և ազնուական մարդկանց զէնքեր , արշալուսային և շիկագոյն մազերով ընտիր և կատաղի ձիեր , նարընջագոյն և կանաչորակ կանացի շրջազգեստներ , հակապատկեր մը տժգոյն և սաստիկ գունոց , ռամկական դէմքերու և ասպետական գլուխներու , շարժուն կեցուածքներու և մեղկ դիրքերու , այս՝ամենն լուսոյ այնպիսի առատութեամբ , հանճարոյ և յաջողութեան այնպիսի յաղթական երեւմամբ մը , որ մարդ իբրեւ չափազանց ճոխ և զօրաւոր նուագահանդիսէ մը դուրս կ՚ելնէ , կէս մը ապշած , կորսընցունելով իրաց չափը , և չի գիտնալով , թէ պէ՞տք է արդեօք հաւատալ զգայութեան ։

առարկային մէջ կը զգայ, ոչ միայն յառա-
կագծերու հեռագնացութեան համեմատական
պայծառութեան նուազում մը, այլ նաև գու-
նոց բազմութիւն մը և խառնուրդ մը, ընդ-
հանուր կապուտացում մի՝ որ կ՚աճի հեռա-
ւորութեամբ, անհունութիւն մը ցոլացմանց՝
զոր ուրիշ լուսաւոր առարկայք խաչաձեւ կը
կտրեն և կը զետեղեն զանազան պոյներով
և սաստկութեամբք, յարատեւ թրթռում մի
միջանկեալ օդոյ, ուր կը ծածանին աննշմա-
րելի ծիածանմունք, ուր կ՚երերան ակօսաձեւ
փորուածք, ուր վեր կը բարձրանան անթիւ
հիւլէներ, ուր կը շարժին և կը կորսուին
անդադար փախստական երեւոյթք։ Էակաց
թէ՛ դուրսը և թէ ներսը ուրիշ բան չէ՝
բայց եթէ շարժում, փոխնորդութիւն, կեր-
պարանափոխութիւն, և այս խառնաշփոթ
թրթռումն՝ է կեանքն։ Անոր համար, Վե-
նետկեցիք կը կենդանացնեն և կը յարմար-
ցընեն անհուն գոյները՝ որոնք կը միանան
գոյն մը միայն յառաջ բերելու համար. ըզ-
գալի կ՚ընեն փոփոխակի տարածումը՝ որով
մարմինք իրարու կը հաղորդեն իրենց ցոլ-
մունքը. կ՚աճեցնեն զօրութիւնը որով առար-
կայ մը կ՚ընդունի, կը ցոլացնէ, կը գունա-
ւորէ, կը մեղմացնէ, կը ներդաշնակէ անթիւ

լուսաւոր ճառագայթները՝ որք կը բախեն զայն, ինչպէս մարդ մը որ թոյլ չուանները պրկելով՝ կը սաստկացնէ իրենց թրթռացող զօրութիւնները, մինչեւ մեր ականջը հասցընելու համար այնպիսի ձայներ՝ զոր բնաւ չէին լսած մեր թանձր ականջներն։ Այսպէս կը պարզեն և կը բարձրացնեն նոքա իրաց տեսանելի էութիւնը. իրականները գաղափարականի կը փոխեն. ահաւասիկ ծնող բանաստեղծութիւն մը։ Երբ անոր վրայ աւելցընես ձեւի բանաստեղծութիւնն, և այն հանճարն որով կը հնարեն կատարեալ, ինքնաբերական, եզական նախատիպ մը, միջնակարգ ընդ մէջ Փլորենտացւոցն և Փլանդրիացւոց, գերազանց մեղկութեամբ և հեշտութեամբ, վսեմ ուժով և ոստմամբ, կարող հայթհայթելու հսկաներ, ըմբիշներ, թագաւորներ, կայսրուհիներ, բեռնակիրներ, անհամեստ կիներ, ամենէն աւելի իրական և գաղափարական դէմքեր, այն կերպով՝ որ միացնէ ծայրայեղները և մի և նոյն անձի մէջ ամփոփէ ամենէն սիրուն զգալի գեղեցկութիւնը և ամենէն փառաւոր վսեմութիւնը, գրեթէ նոյնքան հրապուրիչ վայելչութիւն մը ինչպէս է Կորրեճճիոյի ձեռագործաց մէջ, բայց դեռ աւելի յորդ առողջութեամբ և հաստա֊

## ՆԿԱՐԶՈՒԹԻՒՆ

